# Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



### ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ



### ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԲՈՑԱՇՈՒՆՉ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԿՅԱՆՔ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ


**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր


ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ՝ համաշխարհային-պատմական կարևորության այդ իրադարձությունը, նշանավորեց սովետական բազմազգ երկրի բոլոր ազգերի ու ազգությունների, բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի հետզհետե ամրապնդվող միասնությունը: Համագումարը համոզիչ ու վառ կերպով դրսևորեց զարգացած սոցիալիստական հասարակության մեջ պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների մարմնավորումը, բոլոր մայրցամաքների ու երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և պրոգրեսիվ կազմակերպությունների հետ ՍՄԿԿ-ի եղբայրական կապերի ամրապնդման գործում նրա վիթխարի դերն ու ուժը:

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ՍՍՀՄ-ում ազգային հարաբերությունների զարգացման հարցերին: ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, տրված է լենինյան ազգային քաղաքականության, մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության անշեղ ամրապնդման, սովետական ազգերի ու ժողովուրդների համակողմանի բարգավաճման ու մերձեցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունների բացառիկ խոր վերլուծությունը, բացահայտված են ազգային հարաբերությունների հետագա զարգացման խնդիրներն ու հեռանկարները:

Բնութագրելով սովետական սոցիալիստական ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման հաջողությունները, ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Անշեղորեն ամրապնդվում է մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը: Մեր կուրսն է՝ մեծացնել յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալը և, դրա հետ մեկտեղ, այն առավելագույնս օգտագործել ամբողջ երկրի ներդաշնակ զարգացման համար: Այդ ճանապարհին մենք հիրավի պատմական նվաճումներ ենք ձեռք բերել:

Սովետական իշխանության առաջին տարիներից մեր տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը կառուցվում էր այնպես, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին մինչև նրա կենտրոնի զարգացման մակարդակը: Եվ այդ խնդիրը հաջողությամբ լուծվեց: Այստեղ կարևորագույն դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և ամենից առաջ ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը: Հետամնաց ազգային ծայրամասեր, ընկերնե՛ր, ներկայումս գոյություն չունեն» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXVI համագումարին... «Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 90—91):

Հաշվետու զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում բերվեցին կոնկրետ փաստական տվյալներ, որոնք ցույց են տալիս սովետական բոլոր հանրապետությունների տնտեսության ու մշակույթի համակողմանի բարգավաճումը: Ռուսաստանյան Ֆեդերացիայում տասներորդ հնգամյակում գործարկված 700 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների թվում քիչ չեն այն հսկաները, որոնք իրենց հավասարը չունեն աշխարհում: Իրենց տեսակի մեջ

## СОДЕРЖАНИЕ

### РЕШЕНИЯ XXVI СЪЕЗДА КПСС—В ДЕЙСТВИИ



### ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА



### ЛЮДИ НАШИХ ДНЕЙ



### ПЛАМЕННЫЕ БОРЦЫ КОММУНИСТИЧЕСКОГО ДВИЖЕНИЯ



### НАУКА И ЖИЗНЬ



### МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ









# ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ


**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ՝ համաշխարհային-պատմական կարևորության այդ իրադարձությունը, նշանավորեց սովետական բազմազգ երկրի բոլոր ազգերի ու ազգությունների, բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի հետզհետե ամրապնդվող միասնությունը։ Համագումարը համոզիչ ու վառ կերպով դրսևորեց զարգացած սոցիալիստական հասարակության մեջ պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների մարմնավորումը, բոլոր մայրցամաքների ու երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և պրոգրեսիվ կազմակերպությունների հետ ՍՄԿԿ-ի եղբայրական կապերի ամրապնդման գործում նրա վիթխարի դերն ու ուժը։*

*Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ՍՍՀՄ-ում ազգային հարաբերությունների զարգացման հարցերին։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, տրված է լենինյան ազգային քաղաքականության, մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության անշեղ ամրապնդման, սովետական ազգերի ու ժողովուրդների համակողմանի բարգավաճման ու մերձեցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունների բազմակողմանի խոր վերլուծությունը, բացահայտված են ազգային հարաբերությունների հետագա զարգացման խնդիրներն ու հեռանկարները։*

*Բնութագրելով սովետական սոցիալիստական ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման հաջողությունները, ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց.* «Անշեղորեն ամրապնդվում է մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը: *Մեր կուրսն է՝ մեծացնել յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալը և, դրա հետ մեկտեղ, այն առավելագույնս օգտագործել ամբողջ երկրի ներդաշնակ զարգացման համար։ Այդ ճանապարհին մենք հիրավի պատմական նվաճումներ ենք ձեռք բերել։*

*Սովետական իշխանության առաջին տարիներից մեր տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը կառուցվում էր այնպես, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին մինչև նրա կենտրոնի զարգացման մակարդակը։ Եվ այդ խնդիրը հաջողությամբ լուծվեց։ Այստեղ կարևորագույն դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և ամենից առաջ ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը։ Հետամնաց ազգային ծայրամասեր, ընկերնե՛ր, ներկայումս գոյություն չունեն»* (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXVI համագումարին... *«Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 90—91)։*

*Հաշվետու զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում բերվեցին կոնկրետ փաստական տվյալներ, որոնք ցույց են տալիս սովետական բոլոր հանրապետությունների տնտեսության ու մշակույթի համակողմանի բարգավաճումը։ Ռուսաստանյան Ֆեդերացիայում տասներորդ հնգամյակում գործարկված 700 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների թվում քիչ չեն այն հսկաները, որոնք իրենց հավասարը չունեն աշխարհում։ Իրենց տեսակի մեջ*

կան հնարավորությունները, համաշխարհային հեղափոխական ուժերի և, առաջին հերթին, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետ դրա դաշինքը քայքայելու նպատակով: Ռեակցիոն նացիոնալիզմը, կրոնական գաղափարախոսության, հակակոմունիզմի հետ սերտաճած, աճող թշնամություն է հանդես բերում դեմոկրատական, պրոգրեսիվ հոսանքների ու ավանդույթների նկատմամբ:

Իմպերիալիստական պրոպագանդան ձգտում է զրպարտել և մեկուսացնել ազգային ազատագրության հեղափոխական ուժերին, փակել պրոգրեսիվ փոփոխությունների ճանապարհը ո՛չ միայն ազատագրված երկրներում, այլև ողջ աշխարհում: Գաղափարախոսական պայքարի սրումն աշխարհում ուղղակի արդյունք է բոլոր հեղափոխական ուժերի դեմ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի ձեռնարկած խաչակրաց արշավանքի: Գաղափարախոսության ասպարեզում այդ խաչակրաց արշավանքը դրսևորվում է հակակոմունիզմի և հակասովետիզմի շեշտակի ուժգնացումով նախ և առաջ ԱՄՆ-ում՝ այսպես կոչված «միջազգային տեռորիզմի» դեմ Սպիտակ տան ծավալած կամպանիայում, որի էությունը ձգտումն է ճախողել ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետագա խորացումը, արգելակել առհասարակ սոցիալական պրոգրեսը:

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց. «Արկածախնդրություն, իրենց նեղ շահագիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն՝ ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ: Լիակատար արհամարհանք ցուցաբերելով ժողովուրդների իրավունքների և իղձերի նկատմամբ, նրանք փորձում են ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը պատկերել որպես «տեռորիզմի» դրսևորում: Նրանք հիրավի նպատակ են դրել հասնել անհասանելիին՝ պատնեշ կանգնեցնել աշխարհում առաջադիմական փոփոխությունների ճանապարհին, իրենց վերադարձնել ժողովուրդների բախտը տնօրինողների դերը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXVI համագումարին, էջ 33):

Իմպերիալիստական գաղափարախոսության, դրա «նոր» հնարանքների, մեթոդների ու ձևերի մերկացումը՝ աշխարհի նորացման, ժողովուրդների սոցիալական ու ազգային պրոգրեսի անհրաժեշտ պայմանն է:

# ԱՐՏԱԴՐԱՄԻՋՈՑՆԵՐԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. Ե. ՄԿՐՏՉՅԱՆ**
Տնտեսական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՄԱՐԴՈՒ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԳԻՏԱԿԱՆ՝ մարքս-լենինյան ըմբռնումն ընդհանուր ոչինչ չունի այդ հասկացության բուրժուական, մանրբուրժուական, անարխիստական, քաղքենիական պատկերացումների հետ: Պատկերացումներ, որոնք անհատի ազատության ու անկախության պրոբլեմի քննարկումը կամ նրա մասին դատողություններն ու խորհրդածությունները սահմանափակում են մարդու, այսպես ասած, «զուտ» կամքի և «զուտ» բանականության շրջանակներում, այսինքն դրանք կտրում են հասարակական պրակտիկայից՝ մարդու և բնության միջև, ինչպես նաև անհատների՝ միմյանց միջև գոյություն ունեցող իրական հարաբերություններից: Դրա հետևանքով նման պատկերացումների օբյեկտ են դառնում ոչ թե անհատի անկախության և ազատության իրական վիճակը, դրա փոփոխություններն ու հեռանկարները, այլ ազատության ու անկախության աբստրակտ, ձևական հնարավորությունները, մարդու՝ որպես անհատի, և նրա կամքի դրսևորման երևակայական հարաբերակցությունը: Արդյունքը լինում է այն, որ անհատի անկախության և ազատության ներքո վերջին հաշվով ընկալվում է նրա բացարձակ ազատությունն ու անկախությունը՝ անկախություն թե՛ բնությունից, թե՛ հասարակությունից, և ոչնչով չսահմանափակվող նրա կամային վարքագծի ազատությունը:

Մինչդեռ այդպիսի անկախություն և ազատություն ո՛չ եղել են, ո՛չ կան և ո՛չ էլ երբևէ կլինեն: Ազատությունը, որն ինքնին ներառում է նաև անհատների անկախությունը, բարդ և խիստ բազմակողմ հասկացություն է: Այն արտահայտում է ինչպես մարդու և բնության, այնպես էլ անհատի և հասարակության միջև, մյուս մարդկանց հետ հարաբերություններում անհատի ինքնուրույնության, բնական և հասարակական ուժերին մարդու տիրապետելու աստիճանը և դրանք իր օգտին ծառայեցնելու հնարավորությունը: Ընդհանուր փիլիսոփայական իմաստով ազատությունը գիտակցված անհրաժեշտությունն է: Հասարակական պրակտիկայի զարգացման ընթացքում, ինչպես նկատել է Էնգելսը, մարդկային իմացության, գիտության ու տեխնիկայի աստիճանական ու թռիչքաձև զարգացման շնորհիվ քայլ առ քայլ մեծանում է մարդու ազատությունը՝ նրա գիտելիքները բնական ու հասարակական ուժերի, դրանց հնազանդեցման ու տիրապետման ձևերի ու եղանակների մասին, և զարգացման որոշակի աստիճանում ստեղծվում են այնպիսի վիթխարի արտադրաուժեր, որոնց օգնությամբ էլ միայն հնարավոր է դառնում հասարակությունը հասցնել այնպիսի վիճակի, երբ այլևս չեն լինի ո՛չ մի դասակարգային տարբերություն, անհատական գոյության միջոցների վերաբերյալ ո՛չ մի հոգս, և որտեղ առաջին անգամ հնարավոր կլինի խոսել իսկական մարդկային ազատության մասին, բնության ճանաչված օրենքներին ներդաշնակ կյանքի մասին (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20. стр. 117):

Ֆ. Էնգելսը նկատի ուներ կոմունիզմի բարձրագույն փուլը, երբ վերացած

մնացած 80 տոկոսը վճարում է պետությունը։ Միջին հաշվով հիվանդանոցում մեկ հիվանդին մեկ օր պահելու համար պետությունն առանձնացնում է 10 ռուբլուց ավելի (տե՛ս Народное хозяйство СССР в 1979 г., стр. 409)։

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների հիման վրա մշակված մեր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյա պլանի կատարմամբ նոր առաջընթաց քայլ կկատարվի ինչպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, այնպես էլ բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացման ասպարեզում։ Նախատեսվում է զգալիորեն մեծացնել սպառման ֆոնդը՝ ազգային եկամտի մեջ նրա բաժինը 1985 թ. հասցնելով 77,3 տոկոսի՝ 1980 թ. 75,3 տոկոսի փոխարեն։ Բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտները կավելանան 16—18, բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը՝ 13—16, հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները՝ 20—22 տոկոսով։ Նախատեսվում է ձեռնամուխ լինել բանվորների և ծառայողների աշխատավարձերի նվազագույն չափի նոր բարձրացման՝ հասցնելով ամսական 80 ռուբլու։ Իրականացվելու են մոր և մանկան պաշտպանության, երեխա ունեցող մայրերի և ընտանիքների, նորապսակների աշխատանքի ու կենցաղի բարելավման միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս։ Սահմանվում է պետական միանվագ նպաստ երեխաներ ծնվելու դեպքում՝ 50 ռ. առաջին երեխայի, 100-ական ռուբլի՝ երկրորդ և հաջորդ երեխաները ծնվելիս։ Երեք օրով ավելանում է այն կանանց տարեկան արձակուրդի տևողությունը, որոնք ունեն մինչև 12 տարեկան հասակի երկու և ավելի երեխաներ։ 1981—1983 թվականներին սահմանվում է նորածին երեխաներ ունեցող աշխատող մայրերի մասնակիորեն վճարվող արձակուրդ՝ մինչև երեխայի մեկ տարեկան դառնալը։ Հետագայում այդպիսի արձակուրդի տևողությունն ավելանալու է մինչև երեխայի մեկուկես տարեկան դառնալը։ Ավելանալու են բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների ծերության և հաշմանդամության, ինչպես նաև խնամողին կորցնելու համար տրվող կենսաթոշակների նվազագույն չափերը։ Երեխաներ ունեցող ընտանիքներին պետության կողմից ցույց տրվող օգնության մեծացման և կենսաթոշակների բարձրացման հաշվին նոր հնգամյակում կավելանան մոտավորապես 50 միլիոն մարդու եկամուտները։ Հնգամյակի տարիներին շահագործման կհանձնվեն 530—540 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակարաններ։

Սոցիալիստական հասարակության անդամների սոցիալ-տնտեսական և իրավաքաղաքական իրավունքներն ու ազատությունները, հասկանալի է, անխզելիորեն կապված են նրանց պարտականությունների հետ։ Պետության հանդեպ քաղաքացիների պարտականությունների անթերի կատարումը սոցիալիստական հասարակության առաջընթացի, բուն իսկ քաղաքացիների իրավունքների ու ազատությունների հետագա ընդլայնման, դրանց իրականացման պրակտիկայի կատարելագործման, անհատի համակողմանի զարգացման անհրաժեշտ պայմանն է։ ՍՄԿԿ XXVI համագումարը մի անգամ ևս շեշտեց հասարակական կյանքի բոլոր օղակներում աշխատանքային ու պետական կարգապահության հետագա ամրապնդման անհրաժեշտությունը։

Այսպիսով, սովետական մարդկանց իրավունքների և ազատությունների իրականացման անհրաժեշտ ու էական պայմաններից մեկը նրանց կողմից իրենց պարտականությունների կատարումն է։ Իսկ վերջինս, իր հերթին, ուրիշ բան չէ, քան այդ մարդկանց իրավունքների ու ազատությունների կիրառման կարևորագույն ձևերից մեկը։ Այսպիսին է արտադրամիջոցների հասարակական սեփականության վրա հիմնված իրավակարգի ներքին դիալեկտիկան։

---

# ԳՈՐԾԱԴՐԵԼՈՎ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Բ. Հ. ԹՈՒՄԱՍՅԱՆ**
«Հայէլեկտրալույս» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր
**Ս. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
Միավորման տեխնիկատնտեսագիտական նետազոտությունների բաժնի պետ

ԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԲԱՐԻ ՀԱՄԲԱՎ է վայելում «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման կոլեկտիվը...»: Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում տրված այս գնահատականը կոլեկտիվի նպատակասլաց աշխատանքի, հանձնարարված գործի նկատմամբ նրա յուրաքանչյուր անդամի պատասխանատու վերաբերմունքի արդյունքն է։

Միավորումն ստեղծվել է ութերորդ հնգամյակի սկզբին, զարգացել, արագ տեմպերով աճել է հաջորդ հնգամյակների տարիներին։ Այժմ «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումը թողարկում է երկրում արտադրվող լույսի էլեկտրական աղբյուրների 10 տոկոսը, լուսատեխնիկական սարքավորումների՝ 14, կուլտուր-կենցաղային նշանակության լուսատեխնիկական առարկաների 11,5 տոկոսը։ Լույսի աղբյուրների և լուսատեխնիկական սարքավորումների արտադրության ծավալով այն Միության երկրորդ միավորումն է՝ Սարանսկի «Սվետոտեխնիկայից» հետո։

Միավորման արտադրանքը սպառվում է ո՛չ միայն մեր երկրի գրեթե բոլոր տնտեսական շրջաններում. նրա զգալի մասն առաքվում է նաև արտասահմանյան բազմաթիվ երկրներ։ Միավորման կազմում են 8 գործարաններ։ Երևանի փորձնական, Կիրովականի, Ղափանի և Մարալիկի լուսատեխնիկական սարքավորումների գործարանները ինքնուրույն տնտհաշվարկային ձեռնարկություններ են՝ առանձին հաշվեկշիռներով։ Գագարինի լուսատեխնիկական ապակու, Սիսիանի թողարկիչ-կարգավորիչ սարքերի, Մարտունու էլեկտրատեղակայման իրերի և Երևանի էլեկտրալամպերի գործարաններն էլ առանձին խումբ են՝ միացյալ հաշվեկշռով, սակայն ինքնուրույն միավորներ չեն։

Էկոնոմիկայի զարգացման ներկա փուլում արտադրության կազմակերպման, համակենտրոնացման, մասնագիտացման և կառավարման առավել արդյունավետ սխեմների ընտրության հարցը կարևոր նշանակություն է ձեռք բերում։ Արտադրամիավորումներն՝ որպես արտադրության կազմակերպման առավել արդյունավետ խոշոր կոմպլեքսների, յուրահատուկ են նյութական, ֆինանսական, աշխատանքային ռեսուրսների օգտագործման բնագավառում մանևրելու, արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներն արագ կերպով բոլոր օղակներում ներդնելու լայն հնարավորություններ։ Այդպիսի միավորումները բնորոշվում են նաև արտադրության ծավալի ավելացմամբ, արտադրանքի տեսականու նորացմամբ, աշխատանքի արտադրողականության, որակի, շահույթի, ֆոնդահատույցի և մյուս բոլոր կարևոր ցուցանիշների բարձրացմամբ, կառավարման ծախսերի կրճատմամբ։ ՍՄԿԿ XXVI համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Հատկապես կուզենայի ասել միավորումների և ձեռնարկությունների մա-

Միավորման մատակարարման, առևտրի և իրավաբանական ծառայությունները աշխատանքներ են կատարում մատակարարողների և սպառողների հետ տնտեսական կապերի ամրապնդման առումով։ 1980 թվականին միավորման արտադրանքի շուրջ 37 տոկոսը սպառողներին է առաքվել հնգամյա պայմանագրերի հիման վրա։

Մեր կոլեկտիվի հաջողությունները անխզելիորեն առնչվում են սոցիալական պրոբլեմների հետևողական լուծման հետ։ Սիստեմատիկաբար կատարվող սոցիոլոգիական ուսումնասիրությունները վկայում են, որ կադրերի հոսունության կրճատումը, աշխատանքի արտադրողականության ու որակի բարձրացումը մեծապես պայմանավորված են արտադրության կուլտուրայի, աշխատանքային, հանգստի և սանիտարական պայմաններով։ Մենք պարզել ենք, օրինակ, որ լամպերի գործարանում կադրերի հոսունության 60 տոկոսը աշխատանքային պայմանների, բնակարանային պահանջի, երեխաների խնամքի, բնակատեղի հեռավորության հետևանք է։ Այդ պրոբլեմների հետևողական լուծումը արտադրության արդյունավետության բարձրացման լուրջ ռեզերվ է։ Կարծում ենք, որ հանրապետության համապատասխան շրջանային և քաղաքային մարմինները սոցիալական զարգացման պլաններում հաշվի կառնեն մեր կոլեկտիվների պահանջները՝ տրանսպորտի զարգացման, բնակարանային, մանկական օբյեկտների, ընտանեկան հանրակացարանների շինարարության նպատակահարմար տեղաբաշխման հարցերում։

Բացառապես տրանսպորտի պատճառով Երևանի էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվը հնարավորություն չունի անցնելու լրիվ հնգօրյա աշխատանքային շաբաթվա ռեժիմի։ Դրա հետ է առնչվում նաև գործարանի խրախուսման ֆոնդերից ամեն տարի շուրջ 130 հազար ռուբլու փոխանցումը տրանսպորտային կազմակերպություններին՝ ավտոբուսային լրացուցիչ մարշրուտներ կազմակերպելու, գիշերային և առավոտյան հերթափոխների բանվորներին փոխադրելու համար։ Մեր համոզմամբ, մետրոպոլիտենի «էլեկտրալամպերի գործարան» կայարանի կառուցումը պետք է համարել հրատապ, այն լրիվ կլուծեր կնպաստի տրանսպորտի պրոբլեմի լուծմանը։

Իններորդ և տասներորդ հնգամյակներում ստեղծված կարողությունները և ձեռք բերած բարձր ցուցանիշներն ամուր բազա են հաջորդ հնգամյակներում միավորման զարգացման համար։ Մշակված է միավորման հեռանկարային զարգացման ծրագրի նախագիծը՝ արտադրական և սոցիալական բաժիններով։ 1985 թվականին արտադրանքի ծավալը կաճի 35 տոկոսով, ընդ որում, դրա 90 տոկոսը ձեռք կբերվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Կուլտուր-կենցաղային նշանակության լուսատեխնիկական ապրանքների արտադրության աճը պլանավորված է 52,5 տոկոսով։ Այն ձեռք կբերվի բյուրեղապակյա լուսացրիչներով լուսատուների, ինչպես նաև լույսի աղբյուրների, հատկապես դեկորատիվ լուսավորման լամպերի արտադրության հետագա ընդլայնմամբ։

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—85 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում ասված է. «Ապահովել ավելի բարձր լուսատվությամբ և ծառայության ավելի մեծ ժամկետ ունեցող լույսի նոր խնայողական աղբյուրների թողարկումը»։ Այդ խնդրի իրականացման նպատակով միավորման լույսի աղբյուրների հատուկ կոնստրուկտորական բյուրոն աշխատանքներ է սկսել նոր լամպերի մշակման և յուրացման համար։ Շուտով կսկսվի 9 տեսակի 25—60 վատ հզորության նոր դեկորատիվ-մոմաձև լամպերի թողարկումը։ Յուրացվում է տարբեր լարվածության ու հզորության ընդհանուր օգտագործման լամպերի արտադրության տեխնոլոգիան, այդ թվում՝ 15 ու 30 վատ հզորության և 15.000 ժամ ծառայության ժամկետով լյումինեսցենտային լամպերի արտադրության տեխնոլոգիան։

Թվարկված սերիաների նոր լամպերի յուրացման ժողովրդատնտեսական արդյունավետությունն արտահայտվում է դրանց ծառայության ժամկետների երկարացման և լուսային մյուս պարամետրերի բարելավման ցուցանիշներով։

Լուսատեխնիկական կուլտուր-կենցաղային և ընդհանուր նշանակության բազմաթիվ իրեր ներկայացված են որակի բարձրագույն կարգի կամ բարելավված որակի «Ն» ինդեքսի. դրանք բոլորն էլ որևէ ցուցանիշով չեն զիջում միջազգային ստանդարտների մակարդակին։

Գիտահետազոտական և փորձակոնստրուկտորական մեծ մասշտաբի աշխատանքներ են նախատեսված ավտոմոբիլային լամպերի նոր տեսակների յուրացման, այդ թվում նաև հալոգենային ցիկլով, նատրիումային, քսենոնային, լյումինեսցենտային, գյուղատնտեսության ասպարեզում կիրառվող, կինոպրոեկցիոն նպատակների, հայելապատված և այլ տիպի լույսի նոր, ժամանակակից աղբյուրների մշակման ու արտադրության տեխնոլոգիայի յուրացման, ինչպես նաև թողարկվող լամպերի որակական ցուցանիշների բարձրացման նպատակով։ Նախատեսված են արտաքին լուսավորության լուսատուների և դրանց համար համապատասխան լամպերի տեսականու ընդլայնման և թողարկվող արտադրատեսակների մոդեռնացման միջոցառումներ։ Վերակառուցումների և արտադրության ընդլայնման լայն ծրագիր է մշակված նաև միավորման մյուս գործարանների համար։

Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը տասնմեկերորդ հնգամյակում կհասնի 26 մլն ռուբլու։ Այդ թվում՝ արտադրության վերազինման և ընդլայնման նպատակին հատկացվում է միջոցների 80 տոկոսը, իսկ սոցիալական պլանի իրականացմանը՝ 20 տոկոսը։ Լույսի աղբյուրների և լուսատեխնիկական իրերի անսահմանափակ և հարաճուն պահանջները հնարավորություն են ընձեռում համարձակորեն լուծելու արտադրության ինտենսիվ և մասամբ էլ էքստենսիվ զարգացման խնդիրները։

Լուսատեխնիկայի արտադրությունը աշխատատար, սակայն քիչ նյութատար և էներգատար ճյուղ է և, մեր կարծիքով, նրա առավել բարձր տեմպերով ընդլայնումը համապատասխանում է հանրապետության արդյունաբերության զարգացման տնտեսական քաղաքականությանը։

Միավորման հետագա զարգացման համար կարևոր նշանակություն կունենա ապակու առանձին արտադրության ստեղծումը լամպերի գործարանում, լամպերի համար մետաղային կիսաֆաբրիկատների արտադրության կազմակերպումը՝ Հրազդանի շրջանում նոր մասնաճյուղի ստեղծմամբ, մեքենաշինական առանձին բազայի ստեղծումը, ինչպես նաև Մարալիկի, Մարտունու և մյուս գործարանների վերակառուցումն ու ընդլայնումը, որը հնարավորություն կընձեռի կրկնապատկելու միավորման արտադրածավալի ներկայիս մասշտաբները։

Արտադրական խոշոր կոմպլեքսում կոլեկտիվի համակողմանի առաջընթացն ապահովելու գործում մանրուքներ չկան։ Նշված խնդիրների լուծումը, ինչպես նաև կոլեկտիվի հեռանկարային ճիշտ կողմնորոշումը արդյունավետ պայմաններ են ստեղծում միավորման հետագա զարգացման, նրա գործունեության արդյունավետության անշեղ բարձրացման համար։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀՈԳԵՎՈՐ ԱՐԺՈՒՅԹՆԵՐԻ ՀԱՐՍՏԱՑՈՒՄԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, ընդհանրացնելով մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման արդի փորձը, նոր ավանդ մուծեց մարքս-լենինյան տեսության մեջ։ Այն համոզիչ վկայեց կոմունիստական գաղափարախոսության ու քաղաքականության հումանիստական էությունը, կուսակցության իդեալների ու ծրագրերի կենսականությունը։*

*Սովետական հասարակությունը աշխատանքի մարդկանց հասարակություն է։ Սոցիալիզմի իդեալն է՝ յուրաքանչյուր մարդու աշխատանքը դարձնել բարձր արտադրողական, հետաքրքրական ու ստեղծագործական։ Հիմնական ուղղություններում նախատեսվում է իրագործել խոր վերափոխումներ մարդկանց կենսագործունեության այդ կարևոր ոլորտում։ Լուրջ սոցիալական նշանակություն ունի ձեռքի, ծանր ֆիզիկական, սակավ որակյալ աշխատանքի աստիճանական վերացումը։ Սոցիալիզմի օրոք հասարակական արտադրության գլխավոր նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների լիակատար բավարարումն է։*

*Հասուն սոցիալիզմի և ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում մշտապես աճում է հասարակության մտավոր կարողությունը։ Ինչպես նշվեց կուսակցության XXVI համագումարում, այժմ երկրում յուրաքանչյուր չորրորդ աշխատողը հիմնականում կապված է մտավոր աշխատանքի հետ։ Ո՛չ միայն գիտության, կրթության, կուլտուրայի, այլև նյութական արտադրության բնագավառում, հասարակության ողջ կյանքում մտավորականությունն ավելի ու ավելի նշանակալի դեր է խաղում։ Միաժամանակ միլիոնավոր բանվորների և կոլտնտեսականների արտադրական գործունեությունում առավել սերտորեն է միահյուսված ֆիզիկական ու մտավոր աշխատանքը։ Նրանցից շատերը ռացիոնալիզատորներ են ու գյուտարարներ, հոդվածների ու գրքերի հեղինակներ, պետական ու հասարակական գործիչներ։ 1965 թ. երկրում մտավոր աշխատողների թիվը կազմում էր 26 միլիոն, 1980 թ. այն հասավ 40 միլիոնի։ Մեծապես ավելանում է բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը, որոնց բաժինն աշխատողների ընդհանուր թվում 21 տոկոսից անցել է։ 1980 թվականին ուսուցման տարբեր օղակներում ընդգրկված էր մոտ 100 միլիոն մարդ։ Այժմ զբաղված բնակչության 83 տոկոսը կամ 146 միլիոն մարդ ունի բարձրագույն ու միջնակարգ կրթություն (լրիվ ու թերի)։*

*Մեծ նշանակություն ունի էկոնոմիկայի աճի սոցիալական ազդակների օգտագործումը, այսինքն սոցիալիզմին հատուկ հասարակական այն գործոնների, որոնք անմիջականորեն ազդում են աշխատանքի, մարդկանց վրա։ Ակնհայտ է, որ մարդիկ արդյունավետ են աշխատում այնտեղ, որտեղ դրա համար ստեղծված են համապատասխան պայմաններ։ Համագումարը վճռականորեն դատապարտեց այն պրակտիկան, երբ ձեռնարկությունների, քաղաքների ու գյուղերի սոցիալական զարգացման համար նախատեսվող միջոցներն իրենց նպատակին չեն ծառայում։ Մինչդեռ սովետական մարդկանց կենսապայմանների ու կենցաղի բարելավման նկատմամբ հոգատարությունը պետք է լինի մեր կյանքի անխախտ օրենքը։ Սկզբունքային նշանակություն ունի համագումարի*



*այն ցուցումը, որ դաստիարակությունն այն դեպքում է հաջող, երբ խարսխված է սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի, յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի ու օբյեկտիվ գնահատման վրա։ Այս է գաղափարական ներազդման հաջողության երաշխիքը։*

*Սոցիալիստական իդեալը բնավ չի ժխտում նյութականը՝ բնակարանային լավ պայմանները, հարմար ու գեղեցիկ հագուստը, բարձրորակ սնունդը և այլն։ Սակայն հասարակական կարծիքը դատապարտում է այն մարդկանց, որոնց կյանքի նպատակը կուտակելու տենչն է, որոնց համար իրերն ու դրամը նրանց ձգտումների վերջնական նպատակն են։ Սոցիալիզմին խորթ նման երևույթների դեմ անհրաժեշտ է սկզբունքային, հետևողական պայքար ծավալել։*

*Նոր մարդու կերպավորման խնդիրների լուծման գործում դրսևորվում է հասարակության ու անհատի փոխհարաբերության դիալեկտիկան։ Սոցիալիստական հասարակությունը ձգտում է ստեղծել բոլոր հնարավոր պայմանները անհատի համակողմանի, ներդաշնակ զարգացման համար։ Կուսակցության XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը մասնավորապես շեշտեց, որ մենք նյութական ու հոգևոր մեծ հնարավորություններ ունենք անհատի առավել լրիվ զարգացման համար ու այսուհետ ևս կմեծացնենք դրանք։ Սակայն դրա հետ մեկտեղ կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ կարողանա խելացիորեն օգտվել դրանցից։ Իսկ դա, վերջին հաշվով, պայմանավորվում է այն բանով, թե ինչպիսիք են անհատի շահերը, պահանջմունքները։ Բնականաբար, մեր կուսակցությունը սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարում է դրանց ակտիվ, նպատակասլաց ձևավորումը։*

*Ժամանակին Կ. Մարքսը կապիտալիստական արտադրահարաբերությունների հետազոտումը սկսել է առանձին ապրանքի վերլուծությունից, այն բնորոշելով որպես բուրժուական հասարակության հարստության տարրական ձև։ «Մեր փոխադարձ արժույթը յուրաքանչյուրիս ունեցած առարկաների արժեքն է։ Հետևաբար, մեր իսկ մարդը մի այլ մարդու համար ինչ-որ մի արժույթաքուրկ է հանդիսանում»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 42, стр. 35)*։ Ակներև է, որ սոցիալիզմի օրոք ապրանքը չի կարող ելակետ լինել արտադրահարաբերությունների վերլուծության համար, երբ անտեսվում է մարդկային գործոնը։ Հիրավի, սոցիալիզմի տնտեսական քաղաքականության ելակետն ու վերջնակետը հոգատարությունն է կոնկրետ մարդու, նրա կարիքների ու պահանջմունքների նկատմամբ։ Այս միտքը այդպես բանաձևեց ՍՄԿԿ XXVI համագումարը։*

*Հասարակության կենսագործունեության յուրաքանչյուր ոլորտում սոցիալիզմը պայմաններ է ստեղծում ամենատարբեր անհատական ունակությունների դրսևորման համար։ Մինչ այդ սոցիալ-տնտեսական ոչ մի ֆորմացիա չի կարողացել ապահովել էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման հեռանկարները, ինչպես կոմունիստական ֆորմացիան։ Վերջինս արդեն իր առաջին՝ սոցիալիստական փուլում ստեղծեց բարձր սոցիալական կուլտուրա, հոգևոր ու բարոյական արժույթներ։ Հումանիստական իդեալներից գոյավորվող սոցիալիստական կուլտուրան հոգևոր մթնոլորտի առաղձն է, որը նպաստում է անհատի հասարակական ինքնահաստատմանը, հասարակական կյանքի ոլորտ նրա ակտիվ ներգրավմանը։ Այն հնարավորություն է ընձեռում աշխատավոր զանգվածներին ո՛չ միայն օգտվելու հոգևոր արժույթներից, այլև հանդիսանալու դրանց ակտիվ ստեղծողներ։ Սոցիալիզմի համար օբյեկտիվորեն օրինաչափ է մարդկանց վերափոխումն իրենց սոցիալական լինելության գիտակից արարողների։ Սոցիալիզմը կուլտուրական հեղափոխության վիթխարի հաումների և սոցիալիստական ապրելակերպի առավելությունների շնորհիվ հոգևոր մշակույթի բոլոր ոլորտների զարգացման արագ տեմպեր է ապահովում։*

*Զարգացած սոցիալիզմը ենթադրում է հասարակության հոգևոր ոլորտում գաղափարական ու կուլտուրական այնպիսի միասնություն, որն արտահայտվում է բոլոր դասակարգերի, սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների բազմակողմանի համագործակցության խորացմամբ։*

*Սոցիալիստական կուլտուրայի զարգացումն արդի փուլում իրագործվում է գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։ Այդ առաջընթացը, դըրսևորվելով նյութական կուլտուրայի հասումներում, միաժամանակ ակտիվորեն*

սատարում է հումանիստական կուլտուրայի հարստացմանը, մարդու հոգևոր աշխարհի կերպավորմանը: Հոգևոր կուլտուրայի բոլոր, այդ թվում և հումանիտար ոլորտներն ակտիվորեն ազդում են գիտատեխնիկական առաջընթացի վրա: Այդ փոխկապակցված պրոցեսը հանգեցնում է հոգևոր կյանքին՝ գիտատեխնիկական հեղափոխության առաջադրած նոր պրոբլեմների լուծմանը: Անշուշտ, կուլտուրայի պրոգրեսն առհասարակ հանդես է գալիս որպես գիտության ու տեխնիկայի առաջընթացի սոցիալական կարևոր լծակ:

Անհատի համակողմանի զարգացումը նրան հնարավորություն է ընձեռում ընտրելու աշխատանքային գործունեության այն ոլորտը, որը ներդաշնակ է նրա ունակություններին ու պահանջմունքներին: Բազմակողմանի զարգացումը ենթադրում է նաև գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի առկայություն, որը կոմունիստական շինարարության պայմաններում ներազդում է միլիոնավոր մարդկանց վարքագծի նորմերի ու համոզմունքների կերպավորման վրա: Յուրաքանչյուր հոգևոր արժույթ յուրովի է ազդում սոցիալիստական տիպի անհատի կերպավորման վրա:

Սոցիալիստական հասարակության կուլտուրայի նյութատեխնիկական բազան առավել ընդլայնվում է գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ: Իր հերթին գիտատեխնիկական պրոգրեսը և դրա հետ առնչվող աշխատանքի բարդացումը պահանջում են աշխատավորների կուլտուրական մակարդակի աճ: Աշխատողների որակավորման բարձրացմամբ բազմազան են դառնում նրանց կուլտուրական պահանջները:

Այս առումով նոր խնդիրներ են դրվում սոցիալիստական պլանավորման սիստեմի առջև: Այժմ սոցիալ-տնտեսական ու կուլտուրական պլանների մշակումը հնարավորություն է ընձեռում լուծելու ո՛չ միայն տնտեսական պրոբլեմներ, այլև առավել հարստացնելու աշխատավորների հոգևոր կյանքը: Դա հնարավոր է իրականացնել միայն խորապես վերլուծելով անհատի վրա սոցիալիստական կուլտուրայի բարոյական, գեղագիտական, ճանաչողական և մյուս առումներով ներգործման փաստական հարաբերակցությունը: Կարևոր է քննել կուլտուրայի տեսակների փոխադարձ կապերը՝ ինչպես բնակավայրի, այնպես և ընտանիքի ու կոլեկտիվների մասշտաբով:

Սոցիալիստական հասարակության հոգևոր արժույթների համակարգում առանձնապես կարևորվում է քաղաքական կուլտուրան, որը սովետական բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների սեփականությունն է: Որպես մարդկանց կենսագործունեության հատուկ գոյատեսակ, քաղաքական կուլտուրան բովանդակում է գաղափարական ու քաղաքական գիտելիքների, հայացքների ու համոզմունքների, հասարակության ու անհատի հոգևոր արժույթների ողջ համակարգը: Այն հաստատում է մարդկանց սոցիալական ակտիվության, հասարակական-քաղաքական գործելակերպը, բանվոր դասակարգի, կոմունիստական կուսակցության քաղաքականությունն ընկալելու և կենսագործելու նրանց կարողությունը, տնտեսական շինարարության խնդիրների և համապատասխան հասարակական պրոցեսների կառավարմանը նրանց մասնակցությունը:

Հասուն սոցիալիզմի քաղաքական կուլտուրան պայմանավորում է հասարակության հոգևոր կյանքի կառուցվածքի պրոգրեսիվ փոփոխումը, նրա մտավոր պոտենցիալի հարստացումը: Մյուս կողմից, երկրի հոգևոր կարողության աճը, կուլտուրայի տարբեր ճյուղերի զարգացումը պայմաններ են ստեղծում լուծելու երկրում կուլտուրայի զարգացման հետ առնչված որակապես նոր քաղաքական խնդիրներ:

Հայտնի է, որ հակասությունները, ինչպես ամեն մի փոփոխման ու զարգացման աղբյուր ու շարժիչ ուժ, հատուկ են նաև կուլտուրայի զարգացմանը: Դրանց ուսումնասիրումը հնարավորություն է ընձեռում խորապես բացահայտելու կուլտուրական առաջընթացի օրինաչափությունները: Սոցիալիստական կուլտուրական հեղափոխության ընթացքում վերանում են կապիտալիզմի կուլտուրային բնորոշ անտագոնիստական հակասությունները: Միայն սոցիալիզմն է հնարավորություն ընձեռում կուլտուրայի ստեղծագործական կարողության անարգել դրսևորման համար: Ի տարբերություն անտագոնիստական հասարակական-տնտեսական ֆորմացիաների, սոցիալիզմը գիտականորեն կառա-



վարվող հասարակություն է, որտեղ կուլտուրան օժտվում է նոր բովանդակությամբ, արտացոլում պատմականորեն նոր հասարակության հոգևոր կյանքը:

Սոցիալիստական կուլտուրայի զարգացման պատմական նոր հնարավորությունների իրացումը ինքնահոս պրոցես չէ: Այն իրականացվում է ժողովրդի գիտակցված ջանքերով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Այստեղ հաղթահարվում են նոր կուլտուրայի ոլորտում տակավին առկա ու ներհակ հակասությունները, որոնք գոյատևում են դասակարգերի, խավերի սոցիալ-կուլտուրական տարբերությունների պայմաններում:

Սոցիալիզմի զարգացման արդի փուլին հարկավոր է ստեղծագործական և ոչ ստեղծագործական աշխատանքի միջև եղած տարբերության աստիճանական հաղթահարումը, որը իրագործվում է աշխատավորական զանգվածների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմամբ: Հարկ է նկատել, որ սոցիալիստական հասարակության մեջ ոչ անտագոնիստական հակասություններն էապես հարթվում են մասսաների հասարակական-քաղաքական գործունեությամբ, պետության ու հասարակության կառավարման գործերին նրանց անմիջական մասնակցությամբ: Աշխատավորների մի մասի անբավարար քաղաքական գիտակցականությունը, սոցիալական ոչ լիահասունությունը, գործի նկատմամբ ձևական, ոչ ստեղծագործ վերաբերմունքը և նման այլ բացասական երևույթներ աստիճանաբար հաղթահարվում են տնտեսական ու կուլտուրական պրոգրեսի ընթացքում՝ շնորհիվ կուսակցության հետևողական գաղափարադաստիարակչական աշխատանքի:

Սոցիալիզմը կյանքում հաստատում է հոգևոր արժույթների նոր համակարգ, որի ոգին մարքս-լենինյան գաղափարախոսությունն է, կոմունիզմի հումանիստական նպատակներն ու իդեալները: Սոցիալիզմի հիմնական կուլտուրական արժույթը հոգեպես հարուստ, սոցիալապես ակտիվ, համակողմանիորեն ու ներդաշնակ զարգացած մարդն է, որի ողջ գործունեությունը նպատակամղված է հանուրի բարօրությանը:

Հասուն սոցիալիստական հասարակության հոգևոր կուլտուրան հիմնվում է հումանիզմի գաղափարների վրա և նպաստում նոր, կոմունիստական տիպի անհատի կերպավորմանը: Սոցիալիստական կուլտուրայի գաղափարական արժույթների համակարգը սատարում է և գիտական աշխարհայացքի տարածմանը, արմատավորում անհատի հարուստ հոգաշխարհ, սահմանում մարդկային կյանքի նպատակն ու իմաստը:

Հաճախ բուրժուական սոցիոլոգները, ճգնելով խեղաթյուրել սոցիալիզմի էությունը, պնդում են, թե, իբր, սոցիալիզմի հիմնական նպատակն արտադրությունն ու արտադրողականությունն է: Նենգափոխելով մարքսիստական հայացքները հասարակական զարգացման պրոցեսների վերաբերյալ, նրանք սքողում են այն անժխտելի փաստը, որ սոցիալիստական հասարակության գերագույն նպատակը նոր տիպի անհատի ներդաշնակ զարգացումն է, նրա ազատության, առավելագույն ինքնարտահայտման ապահովումը: Ժխտելով այդ, մեր գաղափարական հակառակորդները սոցիալիստական կուլտուրան ներկայացնում են իբրև անհատի հոգևոր կյանքի համահարթման ու կաղապարման միջոց: Բուրժուական կուլտուրոլոգիական տեսություններում ցարդ չի լուծվել հոգևոր պրոգրեսի՝ մարդ-արարիչ և մարդ-կուլտուրայի արդյունք երկընտրանքը: Միայն մարքս-լենինյան տեսությունը կարողացավ ապացուցել, որ մարդիկ կուլտուրայի և՛ արդյունքն են, և՛ կերտողները: Մարդն իր գործունեությամբ է ստեղծում կուլտուրան և փոփոխելով հասարակության նյութական ու հոգևոր կյանքը, ինքն էլ է փոխվում:

Սոցիալիստական ապրելակերպը արգասաբեր է ներգործում մարդու հոգևոր աշխարհի վրա: Էկոնոմիկայից ու քաղաքականությունից սկսած մինչև գաղափարախոսության, բարոյականության և հոգևոր կուլտուրայի մյուս տարրերը նպաստում են սոցիալիստական հասարակական կյանքի բոլոր ոլորտների նպատակասլաց զարգացմանը: Այդ պրոցեսի կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ մարդն այստեղ հանդես է գալիս ոչ թե իբրև արտաքին ուժերի ազդեցության ներքո տարերայնորեն ձևավորված պասիվ օբյեկտ, այլ որպես կուլտուրական պրոգրեսի ակտիվ սուբյեկտ, որի գործունեությունն

նը կոմունիզմի կառուցմանը։ Սակայն հասարակության սոցիալ-կուլտուրական կյանքի ոլորտում առկա են լուրջ պրոբլեմներ, որոնք պայմանավորվում են արդիականությանը բնորոշ սոցիալական պրոցեսների արագ զարգացումով, ինչպես և անցյալի մնացուկների դեմ պայքարի անհրաժեշտության սրումով։ ՍՄԿԿ XXVI համագումարը պահանջեց կազմակերպական, ֆինանսական, իրավական բոլոր միջոցներով ամուր փակել ամեն տեսակ սողանցքները պորտաբուծության, կաշառակերության, սպեկուլյացիայի, անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգությունների առաջ։ Անդրադառնալով այդ ցավոտ հարցերին, համագումարը նշեց, որ դրանց լուծումը, ինչպես որ առհասարակ նոր մարդու կերպավորումը, կենսականորեն անհրաժեշտ խնդիր է։ Հիրավի, սխալ կլինի բացասական երևույթները սոսկ մարդկանց գիտակցության մեջ անցյալի վերապրուկներին առնչելը։ Նման դեպքում տեսադաշտից դուրս են մնում այն արատները, որոնց պատճառները պետք է փնտրել այսօրվա պրակտիկայում, կոլեկտիվի կամ առանձին աշխատողի վրիպումներում։

Քաղքենիական հայացքներն ու տրամադրությունները, անկարող լինելով փոխելու սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքը, այնուամենայնիվ, թափանցում են առանձին անհատների ներաշխարհը և քայքայիչ ազդեցություն գործում նրանց զարգացման վրա։ Տակավին սոցիալիստական հասարակության մեջ կան մարդիկ, որոնք պարփակվում են քաղքենիության կեղևում, անտարբեր են կատարվող հասարակական անցքերի նկատմամբ, իրենց գործողությունների համար ձգտում են խուսափել անձնական պատասխանատվությունից, սոցիալիստական ապրելակերպի նորմերը պահպանելու հարցում ցուցաբերում են պասիվ վերաբերմունք։ Դեռևս կան և այնպիսիք, որոնք շարչիական վերաբերմունք ունեն հոգևոր արժույթների հանդեպ։ Այսպես կոչված «լուսավորված» քաղքենին, տառապելով սպառողական հոգեբանությամբ, կյանքի նպատակ է դարձնում «պրեստիժային, անտիկվարային իրերի» ձեռքբերումը։ Իրեն համարելով գեղեցկի մարմնացում, նա սնոբիստական-քննադատական վերաբերմունք է դրսևորում այժմեականության նկատմամբ, չափազանցնում ու գերագնահատում իր տեղն ու դերը մարդկային հարաբերություններում, հասարակական գործերում։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը քաղքենին օգտագործում է միայն իր համար, արժեքավորելով այն պրագմատիկորեն։ Մինչդեռ, ընչաքաղցությունը, հարստանալու տենչը հոգեպես սնանկացնում են քաղքենուն, որին խորթ է անշահախնդրության վսեմ զգացումը։

Քաղքենիությանը մխիթարում է արդի գիտության ու կուլտուրայի հասումներին ձևականորեն առնչվելը։ Հոլովելով ժամանակակից գիտատեխնիկական պրոգրեսին վերաբերող բառակապակցություններ, ինտելեկտուալ քաղքենին արհամարհանքով է նայում «անցյալի միամտություններին» և իր ինքնագոհ կեցվածքով պահանջում հատուկ ուշադրություն սեփական անձի նկատմամբ։

Արդի քաղքենիությանն իր ինտելիգենտական միմիկրիայով հակադրվում է անհատի բարձր գաղափարայնությունն ու բանականությունը, մշտական հոգևոր ինքնահարստացումը, առօրյա աշխատանքի հրապույրը, այլոց օգտակար լինելու գիտակցման երջանկությունը, առատ հուզաշխարհը, սեփական արարքների ու գործողությունների համար հասարակության հանդեպ բարոյական պատասխանատվության զգացումը։

Ահա թե ինչու մեր կուսակցությունը սովետական ժողովրդի ջանքերը նպատակամղում է ստեղծելու բարոյահոգեբանական այնպիսի մթնոլորտ, որի բնորոշ հատկանիշներն են՝ բարձր պահանջկոտությունը, հասարակական ու անձնական կյանքում բացասական երևույթների նկատմամբ անհաշտվողականությունը, սոցիալիստական համակեցության նորմերի իրագործումը։

Կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հասարակության կուլտուրայի առաջընթացը միակցում է համակողմանի զարգացած անհատի, նոր մարդու իդեալը կերպավորողի ու իրականացնողի հետ, որին խորթ են անբարոյականությունն ու հոգևոր սնամեջությունը։ Սոցիալիստական կուլտուրայի զարգացման բարձրագույն նպատակը և գլխավոր իմաստը յուրաքանչյուր մարդու կոմունիզմի ակտիվ մարտիկ դարձնելն է, նրան լավատեսության, հավատարմության, բարոյական վսեմ սկզբունքներով համակելը, որոնք համա-



հնչում են կոմունիստական շինարարության հումանիստական նպատակներին։

Ժամանակակից մարդը, ընկալելով բազմապիսի ինֆորմացիա, միաժամանակ լուրջ գիտելիքների կարիք ունի, կյանքում իր տեղը գտնելու, բարոյագիտական արժույթներն ըմբռնելու, ինքնաճանաչման կարողությունը դրսևորելու համար։ Կարևոր է նաև անցյալի հոգևոր ժառանգության ուսումնասիրումը, որը նույնպես նպաստում է արդիական պրոբլեմների ճիշտ ըմբռնմանը, ինչպես և սեփական ես-ի գաղտնարանները թափանցելուն։

Այժմ բարոյական համակարգը զարգանում է շատ բարդ ու բազմակողմանի առնչություններով և անուղղակի կերպով է աղերսվում գիտատեխնիկական առաջընթացի հետ։ Այստեղ փոխադարձ կապերը բարդ են ու հակասական, միջնորդավորված գաղափարաքաղաքական արժույթներով։ Բուրժուական հասարակության մեջ որոշակի խզվածություն կա բարոյական առաջընթացի ու գիտատեխնիկական պրոգրեսի միջև։

Սոցիալիստական կուլտուրայի շրջանակներում առանձնահատուկ կշիռ ունի անհատի բարոյական վարքագիծը, նրա ակտիվ քաղաքացիական դիրքավորումը, որն անհամատեղելի է քաղաքական պասիվության հետ։ Սոցիալիստական կուլտուրայի բարոյական չափանիշը մարդու կատարելությունն է, նրա հարաճուն վերելքը։ Սոցիալիստական հասարակության հոգևոր մթնոլորտը խարսխվում է անհատի ստեղծարար ակտիվության, նրա հոգևոր կարողությունների, բարոյական հատկանիշների բյուրեղացման ու հարստացման վրա։

Հասուն սոցիալիստական հասարակությունում հոգևոր պահանջմունքների զարգացումը դինամիկ ու կառավարվող պրոցես է։ Այստեղ ի հայտ են գալիս ու արմատավորվում այնպիսի պահանջմունքներ, որոնք հարստացնում են մարդու հոգևոր աշխարհն իրենց բազմազանությամբ ու ինքնատիպությամբ։ Անշուշտ, մարդու հոգևոր պահանջմունքների կերպավորումը կոմունիստական դաստիարակության ընդհանուր պրոցեսի օրգանական մասն է։ Հոգևոր պահանջմունքները մարդու ներաշխարհի բարդ ոլորտն են, որոնք մշտապես ենթակա են զարգացման ու խորացման, բազում թելերով առնչվում են արտաքին միջավայրի հետ։ Մարդուն պետք է սովորեցնել ճիշտ ընկալել հոգևոր արժույթները, իսկականը տարբերել կեղծիքից, սուրոգատից։ Մշակույթն ընկալելու կուլտուրան դաստիարակչական նպատակասլաց ներգործության արդյունք է։

Հասուն սոցիալիզմի պայմաններում նոր իմաստ ու կարևորություն է ըստանում մարդկանց հաղորդակցման կուլտուրան, որոնց բովանդակալից առնչությունները ի հայտ են գալիս աշխատանքում։ Անձի վսեմ բարոյական հատկանիշները դրսևորվում են կոլեկտիվ գործունեության պրոցեսում, վերջինիս համակարգում։ Արտադրապրոցեսում մշակվում է աշխատողի նկատմամբ անհրաժեշտ պահանջների սիստեմ, որն անշուշտ բովանդակում է նաև բարոյական արժույթ։ Միաժամանակ անձն ինքն իր նկատմամբ ևս պահանջ է հարուցում։ Դա նուրբ հոգեբանական երևույթ է, անհատի ինքնագիտակցության բարձրացման արտահայտություն և սերտորեն ներդաշնակվում է կոմունիստական բարոյականության սկզբունքների հետ։

Հոգածությունը մարդկանց բարոյական միտումների նկատմամբ մեր երկրում սահմանադրորեն բարձրացված է օրենքի աստիճանի։

Կուլտուրայի մարքս-լենինյան տեսության հետևողական մշակումը մեծապես նպաստում է գիտականորեն հիմնավորելու հոգևոր արժույթների արարման ու տարածման քաղաքականությունը, կազմակերպելու առավել արդյունավետ կուլտուր-մասսայական ու լուսավորչական աշխատանք։ Կուլտուրայի մարքս-լենինյան ըմբռնմամբ հիմնական ուշադրությունը կենտրոնացվում է մարդու հոգևոր զարգացման, նրա համակողմանի ձևավորման վրա։ Կուլտուրայի սոցիալիստական սկզբունքների զարգացումը հասարակական առաջընթացի լուրջ կռվան է, անհրաժեշտ պայման մասսաների ակտիվ ստեղծարար գործունեության ծավալման համար։ Այսպիսով, անհատը ո՛չ միայն կուլտուրական պրոգրեսի սուբյեկտ է այն առումով, թե նա իրենից ինչ է ներկայացնում, այլև այն, թե հոգևոր զարգացման ընթացքում ինչ կարող է իրականացնել։

Անհատի համակողմանի զարգացումն իբրև կուլտուրայի սուբյեկտ ելնում է այն իրողությունից, որ նրա ինքնադրսևորումն արտահայտվում է բուն գործունեության ընթացքում։ Վերջինիս նպատակն է հասնել բարձր հասարակական

նպատակների և իբրև մարդկային լինելության էության՝ նպաստում է անհատի ստեղծագործական կարողությունների բացահայտմանը։ Հասուն սոցիալիզմը, մի կողմից, հաստատում է կոլեկտիվի ռեալ պատասխանատվությունը մարդու դաստիարակության համար, մյուս կողմից անհատից պահանջում մեծ լարում, ներքին հոգևոր գործունեություն, մշտական ինտելեկտուալ ու բարոյական ինքնակատարելագործում։ Արդ, հատկապես կարևորվում է անհատի սուբյեկտիվ կարողությունը և պատասխանատվությունը սոցիալիզմի ստեղծած բարենպաստ պայմաններն իր ստեղծագործական պոտենցիալի առավելագույն դրսևորման նպատակով լիովին օգտագործելու խնդրում։

Կենսական անհրաժեշտություն է դարձել բնակչության տարբեր խավերի հոգևոր պահանջմունքների և ունակությունների դրսևորման խթանների, նրանց հոգևոր զարգացման մեջ մասսայական պրոպագանդայի ու ինֆորմացիայի, կուլտուր-լուսավորչական հիմնարկությունների և կուլտուրայի տարածման մյուս հաստատությունների դերի կոնկրետ ուսումնասիրումը։ Անհրաժեշտ է խորապես մշակել աշխատավորության ազատ ժամանակի խելամիտ օգտագործման պրոբլեմը, որը, որպես անհատի հոգևոր աճի զորեղ կռվան, հաճախ կուլտուր-լուսավորչական աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով կորցնում է իր նշանակությունը։ Այդ հատկապես կարևորվում է այն առնչությամբ, որ մեր հասարակությունը ակտիվ է պայքարում այնպիսի բացասական երևույթների դեմ, ինչպիսիք են հարբեցողությունը, պորտաբուծությունը, կուլտուրական արժույթները զուտ ժամանցի առումով գնահատելը և այլն։

Հավատարիմ մնալով կուլտուրայի բնագավառում լենինյան քաղաքականությանը, մեր կուսակցությունը հոգատարությամբ և հարգանքով է վերաբերվում գեղարվեստական մտավորականությանը, նրան կողմնորոշում լուծելու ստեղծագործական բարդ խնդիրներ։ Կենսագործելով գաղափարայնության, կուսակցականության, ժողովրդայնության, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքները, սովետական արվեստագետները հաջողությամբ են յուրացնում ժամանակակից թեման, հասարակական կյանքում տեղի ունեցող կարևոր պրոցեսները, ակտիվ մասնակցում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, նպաստում նրանց գաղափարական հասունությանը, բարոյական կատարելագործմանը։ Երբեք սովետական արվեստի խնդիրներն այդքան սերտորեն չեն շաղկապվել երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման խնդիրների հետ։ Դա հնարավոր դարձավ շնորհիվ այն բանի, որ վերջին տարիներս ավելի ամրապնդվեց արվեստագետների կապը կյանքի, ժողովրդի ստեղծարար գործունեության հետ։ «Հսկայական է,— ասաց ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը,— սովետական մարդկանց ձգտումը դեպի արվեստը։ Հայտնի է, թե երբեմն ինչքան դժվար է լինել լավ ներկայացման, գնել հետաքրքրական գիրք, այցելել ցուցահանդես։ Բայց արվեստի հանդեպ այդ հարգանքը, այդ հոգսերը ենթադրում են նաև արվեստագետի մեծ պատասխանատվությունն իր ժողովրդի առջև։ Ապրել ժողովրդի շահերով, նրա հետ կիսել ուրախությունն ու վիշտը, հաստատել կյանքի ճշմարտությունը, մեր մարդասիրական իդեալները, լինել կոմունիստական շինարարության ակտիվ մասնակից՝ ահա հենց սա է արվեստի իսկական ժողովրդայնությունը, իսկական կուսակցականությունը»։

Արվեստի դաստիարակչական ուժը, առաջին հերթին, դրական օրինակն է։ Խնդիրը ոչ թե հերոսին իդեալականացնելն է, այլ տիպականացնելը։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները վճռականորեն առարկել են դրական հերոսի պատկերման ու գնահատման ծայրահեղությունների դեմ, երբ մի դեպքում հերոսը վերածվում էր հեղինակի գաղափարների խոսափողի, մեկ այլ պարագայում ցուցադրվում են կենցաղային մանրամասները։ Տիպականացումը, որպես ռեալիստական արվեստի ստեղծագործական մեթոդ, հնարավորություն է ընձեռում միավորելու կերպարի կենսական ճշմարտացիությունը իդեալի հետ, հանդիսատեսին կամ ընթերցողին օգնելով՝ տեսնելու փաստը, իրադարձությունը, մարդու զարգացման հեռանկարը։

Սովետական արվեստին բնորոշ է ստեղծագործական ժանրերի ու ոճերի բազմազանություն, այն բազմաշերտ իրականությունն արտացոլում է անցյալի, ներկայի ու ապագայի եռմիասնության մեջ, սակայն, ինչպես միշտ, գլխա-



վոր ուշադրությունը սևեռելով արդիականության գեղարվեստական պատկերմանը։ Ստեղծված են մեր ժամանակակիցների վառ կերպարներ, որոնք հուզում են մարդկանց, վեճեր հարուցում, ստիպում խորհել ներկայի ու ապագայի մասին։ Համագումարում նշվեց, որ կուսակցությունը ողջունում է լավագույն ստեղծագործություններին հատուկ քաղաքացիական պաթոսը, անհաշտ հետևողականությունը թերությունների հանդեպ, արվեստի ակտիվ միջամտությունն այն պրոբլեմների լուծման գործին, որոնցով ապրում է մեր հասարակությունը։ Սովետական արվեստը աշխատանքի թեմայի մեջ թափանցելու, ժողովրդի ստեղծարար սխրանքը բացահայտելու հսկայական փորձ է կուտակել։ Աչքի ընկնող կտավներում աշխատանքը հառնում է ո՛չ միայն որպես առաջընթացի աղբյուր, այլև մարդկանց միավորող, ամեն մի անհատի լավագույն հատկանիշները հայտաբերող գեղագիտական միջոց։ Ճանաչման արժանացած ստեղծագործությունների հերոսները տարբեր են. շինարարների բրիգադավար և կոլտնտեսության նախագահ, երկաթուղային բանվոր և սպա, օդաչու և խոշոր գիտնական։ Սակայն դրանցից յուրաքանչյուրի մեջ ընթերցողները, հանդիսականները գտնում են իրենց խոհերին ու ապրումներին համահնչուն սովետական բնավորության լավագույն հատկանիշների մարմնավորում։ Արտացոլելով հասարակական ու անհատական կյանքի բազմազան աշխարհը, արվեստը յուրովի է մասնակցում սոցիալիստական կուլտուրայի, սովետական ապրելակերպի հաստատմանը։

Կուսակցության XXVI համագումարն առանձնապես կարևորեց, որ մարդկանց առողջության նկատմամբ հոգատարությունն անբաժանելի է ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացումից։ Մոսկովյան օլիմպիադան ակնբախորեն ցույց տվեց սովետական մարզիկների հիանալի նվաճումները։ Անշուշտ, կան նաև հաջողություններ ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականացման ասպարեզում։ Այնուհանդերձ, մարդկանց մեծամասնության համար սպորտը դեռևս մնում է սոսկ հանդիսախաղ։

Մեզանում ֆիզիկական կուլտուրայով ու սպորտով սիստեմատիկ պարապելը, ֆիզիկական կատարելությունը անձնական գործ չեն, այլ հասարակական պարտք, հատկապես երիտասարդության համար։

Սոցիալիստական հասարակարգում ֆիզկուլտուրային շարժման մեջ վառ կերպով է դրսևորվում կոլեկտիվի դաստիարակչական ուժը։ Համատեղ մարզումները և մրցումները համախմբման, կոլեկտիվիզմի, ընկերականության ու փոխադարձ օգնության զարգացման գործոն են։ Սպորտային մրցույթի մթնոլորտը ստեղծում է բարոյական, հուզական ներազդման ուժով օժտված ազդակներ, որոնք համակում են ինչպես մարզիկներին, այնպես էլ հանդիսատեսներին։ Սակայն սպորտային էթիկայի պահանջները տարերայնորեն չեն գործում։ Նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի բացակայության դեպքում, սպորտային պայքարի սուր դրամատիզմը, կապված հաղթանակի ու փառքի հետ, կարող է որոշ մարզիկների մոտ ծնել գոռոզամտություն, փառատենչություն, արհամարհանք կոլեկտիվի հանդեպ։ Դրա համար անհրաժեշտ է մարզիկների շրջանում, սպորտային կյանքում անշեղորեն արմատավորել կոմունիստական բարոյականության նորմերը։

Այսօր սոցիալիզմի ստեղծած հոգևոր արժույթները, անցյալի պրոգրեսիվ ավանդույթները հանդես են գալիս իբրև հզոր կռվան հանուն նոր, կոմունիստական քաղաքակրթության հաստատման։ Իրոք, հոգևոր կուլտուրան աշխատանքի մարդկանց, ամեն մի աշխատավորի սեփականությունն է, նրա բանական ատաղձի հիմքը։ Սոցիալիստական հասարակարգում հաջողությամբ իրականանում են անհատի համակողմանի զարգացումը և ժողովրդական մասսայական ստեղծարար գործունեությունը։ Հարկ է նկատել, որ դաստիարակչական ներազդեցությունը երբեք այդպիսի լայն ընդգրկում չի ունեցել, ինչպես այժմ։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն աշխատավորների գաղափարաքաղաքական կոփվածությանը, նրանց կողմից իրենց քաղաքացիական պարտականությունների և իրավունքների ըմբռնմանը, սովետական ապրելակերպի սկզբունքների կիրառմանը, այլև սոցիալիստական հոգևոր կուլտուրայի արժույթների ողջ զինանոցի յուրացմանը։

# ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔՆ ՈՒ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

ՄԵՅԱ ՔԱՅԱԽՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ պայքարի պայմաններում, երբ բուրժուական հասարակությունն իր հակահումանիստական հոգևոր էությամբ հանդերձ ամեն կերպ խրախուսում է մասսայական կուլտուրայի արտադրությունն ու սպառումը, որը մասսաներին հեռացնում է ժամանակի հրատապ պրոբլեմներից, հատկապես կարևոր նշանակություն են ստանում Արևմուտքում տիրող սոցիալական հոռետեսական գաղափարներին, հոգևոր սնանկությանը հակադրվող արվեստի կենսահաստատ պաթոսը, պատմական լավատեսությունն ու մարդասիրական վեհ գաղափարները։

Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVI համագումարն այդքան մեծ ուշադրություն նվիրեց գրականության և արվեստի հարցերին, հատկապես շեշտելով արվեստագետի պատասխանատվությունն իր ժողովրդի առաջ։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...այն բանում, որ սովետական հասարակության հոգևոր կյանքը ավելի ու ավելի բազմազան ու հարուստ է դառնում, անվիճելի վաստակ ունեն մեր կուլտուրայի, մեր գրականության ու արվեստի գործիչները...

Կուսակցությունը ողջունում է լավագույն ստեղծագործություններին հատուկ քաղաքացիական պաթոսը, անհաշտ հետևողականությունը թերությունների հանդեպ, արվեստի ակտիվ միջամտությունը այն պրոբլեմների լուծման գործին, որոնցով ապրում է մեր հասարակությունը»։

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում նշվում է, որ գաղափարազրկության դրսևորումները, աշխարհայացքային անորոշությունը ընդունակ են վնաս հասցնելու անգամ շնորհալի մարդկանց ստեղծագործությանը։ «Կուսակցությունը անտարբեր չի եղել և չի կարող լինել մեր արվեստի գաղափարական ուղղվածության նկատմամբ»,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը։

Հասարակական նշանակությամբ գեղարվեստագեղագիտական բարձրարժեք, կատարյալ արվեստի գործերի ստեղծումը հնարավոր է միայն այն դեպքում, երբ արվեստագետն ունի իր ժամանակին հատուկ պրոգրեսիվ աշխարհայացք, քանի որ առանց առաջավոր աշխարհայացքի վրա խարսխված վեհ գաղափարների, մեծ տաղանդներ չեն կարող լինել։

Ստեղծագործության մեջ արվեստագետի աշխարհայացքի որոշիչ դերի հաստատումն ինքնին ենթադրում է տաղանդի ու վարպետության՝ որպես ստեղծագործության անհրաժեշտ պայմանի առկայություն, քանի որ ոչ մի աշխարհայացք, նույնիսկ ամենապրոգրեսիվը, ի վիճակի չէ լրացնելու դրանց չգոյությունը։ Բայց հետադիմական, սահմանափակ աշխարհայացքը կործանարար է անդրադառնում տաղանդի զարգացման վրա, կասեցնում այդ զարգացումը։

Գեղարվեստական ստեղծագործության գաղափարական հիմքն է աշխարհայացքը, որը գաղափարական որոշակի դիրքերից իմաստավորում է արտացոլվող իրականությունը։ Աշխարհայացքը, որպես հասարակական, փիլիսոփայական, քաղաքական, սոցիալական, բարոյագիտական, կրոնական հայացքների, տեսակետների ու սկզբունքների ամբողջություն, ինչ-որ դրսից արվեստագետին պարտադրված, դրանց սոսկ մակերեսային ընկալումը չէ։ Հայեցակետը, հայացքները միայն այն դեպքում են ձևավորվում իբրև աշխարհայացք, երբ դրանք դառնում են արվեստագետի համոզմունքը, դառնում նրա էությունը։



Սովետական հետազոտողները համոզիչ կերպով բացահայտել են աշխարհայացքի կապը իրականության գեղագիտական մոտեցման, արվեստի ստեղծագործության մեջ արտացոլված կենսանյութի ընտրության ու ընդհանրացման, փաստերի գնահատման հետ։ Աշխարհայացքով է պայմանավորված այն, թե արվեստագետն ինչպես է տեսնում կյանքը, ինչն է նրան գրավում, զայրացնում կամ անտարբեր թողնում։ Միայն կուռ աշխարհայացք ունեցող տաղանդը կարող է ճշմարտացի, օբյեկտիվ իրականությանը համապատասխան, իրենց ողջ փոխկապակցության մեջ արտացոլել կյանքը, խորապես ըմբռնել փաստերի ու երևույթների էությունը, իմաստավորել դրանք, այն ամենը, ինչ պայմանավորում է արվեստագետի ստեղծագործության գաղափարագեղագիտական խոր բովանդակությունը։

Ստեղծագործության վրա աշխարհայացքի ազդեցությունը միջնորդավորվում է գեղագիտական իդեալով և գեղարվեստական մեթոդով։ Հասարակականգեղագիտական իդեալն ընդհանրացված ձևով իր մեջ խտացնում է արվեստագետի գաղափարախոսական, բարոյական, գեղագիտական և այլ հայացքները, կյանքի մասին նրա գիտելիքները, ժողովրդի առջև նրա պարտքի գիտակցումն ու պատասխանատվությունը։

Արվեստագետի աշխարհայացքը նրա ստեղծագործական ուժի գլխավոր աղբյուրն է։ Երբ տաղանդը գաղափարապես ձևավորված չէ, անխուսափելիորեն կանգնում է փակուղու առաջ։ Հիշենք աշխարհայացքային ողբերգությունը Գոգոլի, երբ հոգեկան ծանր ճգնաժամ ապրելով, նա կրակին հանձնեց իր վերջին ստեղծագործությունը։

Երբ Հերբերտ Ուելսը և Ջոն Ռիդը Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակի տարիներին առաջին անգամ եղան մեր երկրում, երկուսն էլ տեսան միևնույնը՝ ավերված, բայց արդեն կառուցման ուղին բռնած, ինտերվենտների, սովի ու քայքայման դեմ պայքարող երկիրը։ Հերբերտ Ուելսն իր ուշադրությունը բևեռեց քաղցի, կարիքի ու ավերվածության վրա։ Նա չէր հավատում այդ ամենի հաղթահարման հնարավորությանը և ԳՈԷԼՌՈ-ի պլանը համարում էր անիրականանալի երազանք։ Արդյունքը եղավ այն, որ երևան եկավ նրա Ռուսաստանը մշուշում գիրքը։

Ջոն Ռիդը սովի, կարիքի ու ավերմունքի ետևում կարողացավ տեսնել նորի, առաջավորի, այն ամենի ծիլերը, որ երկիրը տանում է դեպի մարդկության նոր դարաշրջանը։ Այս ամենի մասին նա գրեց Տասը օր, որ ցնցեց աշխարհը գիրքը։ Կոմունիստ գրողի առաջադիմական աշխարհայացքը օգնեց նրան հասկանալու կատարվածի էությունը և դրա կապը հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների հետ։

Աշխարհայացքային հստակ դիրքորոշման բացակայությունն անդրադառնում է Արևմուտքի դեմոկրատական արվեստի գործիչների շատ ստեղծագործությունների վրա։ Արտասահմանյան պրոգրեսիվ արվեստագետների լավագույն ստեղծագործություններում բուրժուական իրականությունը չընդունելը, կյանքի սոցիալական կոնկրետ հակասությունների բացահայտումը հաճախ են զուգորդվում հումանիստական վերացական իդեալների հետ։ Օրինակ, այդպիսին են Իտալիայի ժամանակակից խոշորագույն գրող Ալբերտո Մորավիայի ստեղծագործությունները։ Հոգեբանական վերլուծության փայլուն վարպետ Ֆեդերիկո Ֆելլինին իր ֆիլմերում լուրջ ուշադրություն է նվիրում մարդկային միայնության, թախծի ու հուսահատության պրոբլեմին։ Բայց խորապես ուսումնասիրելով այս պրոբլեմը, նա դուրս չի գալիս ինքնավերլուծության շրջանակներից, համարելով այն մարդկանց փոխհարաբերություններին նպաստող և անձնական ճգնաժամը հաղթահարելու միջոց։ Բայց չէ՞ որ մերձեցման ճանապարհին առկա են ո՛չ միայն հոգեբանական դժվարությունները, այլև բուրժուական հասարակության սոցիալական գործոններն ու իրական հարաբերությունները։

Պատահական չէ, որ բուրժուական արվեստի էվոլյուցիայի վերջին տասնամյակում ակնհայտ են ուժգնացող հոռետեսությունն ու անհուսությունը, որը պայմանավորված է փիլիսոփայական-հոռետեսական աշխարհայացքով։

Աշխարհայացքով է որոշվում ո՛չ միայն արվեստագետի գաղափարագեղագիտական դիրքորոշումը, նրա ստեղծագործական ակտիվությունը, այլև նրա սուբյեկտիվությունը, որն իր ողջ անկրկնելի անհատականությամբ դարաշրջանի, հասարակության սոցիալական կերտվածքի արգասիքն է։ Արվեստի ստեղծագործությունն անխուսափելիորեն կրում է արվեստագետի անձի անհատական ինքնատիպության, նրա աշխարհըմբռնման, աշխարհզգացողության, աշխարհընկալման կնիքը։ Արվեստն ամենից առաջ արվեստագետի ինքնարտահայտումն է, բայց բնավ ոչ սուբյեկտիվիստական, իր ժամանակից, օբյեկտիվ պայմաններից, հասարակական-պատմական իրադրությունից կտրված ստեղծագործողի ինքնարտահայտություն։

Ստեղծագործական անհատականության ձևավորման համար արվեստագետի կենսափորձի ողջ յուրօրինակության, նրա օժտվածության, որոշակի ազդեցությունների ու ներգործությունների հետ մեկտեղ բավական մեծ է ժամանակի գեղագիտական պահանջմունքների դերը։ Գեղարվեստական որոնումները չեն ծագում առանց սոցիալական որոշակի պայմանների ներգործության և, այս կամ այն չափով, հասարակության հոգևոր պահանջմունքների արձագանքն են։ Այսպիսով, ստեղծագործական անհատականությունը միջնորդավորված է պատմահասարակական մի շարք գործոններով, հասարակական աշխարհայացքով, քանի որ արվեստագետը կապված է իր ժամանակի, իր ժողովրդի ու դասակարգի, ժամանակի հոգևոր կուլտուրայի զարգացման հետ։ Հենց այս է, որ ինչ-որ չափով նրան մերձեցնում է այդ նույն դարաշրջանում, պատմահասարակական միևնույն պայմաններում ապրող մյուս արվեստագետների հետ։ Միջնորդավորման հենց այս ներքին կապերն էլ անհատական ինքնատիպությանը հաղորդում են համընդհանուր նշանակություն, հասցնում համամարդկային մակարդակի։

60—70-ական թվականների սովետական բազմազգ արվեստին բնորոշ են գեղարվեստական մտածողության լուրջ առաջխաղացումները, որոնք արգասիք են ժողովրդի հոգևոր կյանքի, անհատական ու բարոյական պոտենցիալի ուժեղացման ու խորացման։

Վերջին տասնամյակի սովետահայ արձակն աչքի է ընկնում ժամանակակից բարոյական ու մարդասիրական պրոբլեմների արծարծմամբ, պրոբլեմներ, որոնք թարմ ու նորովի են արտահայտված Ս. Խանզադյանի, Հ. Մաթևոսյանի, Մ. Գալշոյանի, Ա. Ավագյանի, Ս. Այվազյանի, Վ. Պետրոսյանի, Զ. Խալափյանի, Պ. Զեյթունցյանի և մյուսների ստեղծագործություններում։ Նրանց գործերում բացահայտվում են սոցիալիստական հասարակության մարդու բարոյական հատկանիշները, հարուստ ներաշխարհը պատմահասարակական շրջապատող իրադրության առնչություններում։ Հայ, ինչպես նաև սովետական բազմազգ ժամանակակից գրականության լավագույն հերոսներն ամենից առաջ այն մարդիկ են, որ խորապես զգում են իրենց սոցիալական պատասխանատվությունը հասարակության, պատմության, իրենց իսկ առաջ։ Բայց չէ՞ որ հերոսի սոցիալական ակտիվությունն անխզելի է գրող անհատից, նրա ակտիվ դիրքորոշումից, քաղաքացիությունից, աշխարհայացքից։ Ահա ինչու Հայաստանի գրողների VIII համագումարում կոչ արվեց հանրապետության գրականության բոլոր գործիչներին ակտիվ միջամտել սոցիալական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներին, իմաստավորել մեր իրականության մեջ տեղի ունեցող սոցիալ-տնտեսական վիթխարի վերափոխումները, իրենց քաղաքացիական պարտքը համարել դարաշրջանի առաջավոր գաղափարներին անձնուրաց ծառայելը։

Բուրժուական տեսություններում հաճախ է անտեսվել աշխարհայացքի դերը ստեղծագործության ոլորտում։ Սակայն այժմ նույնիսկ բուրժուական գեղագիտության մեջ աշխարհայացքից գեղարվեստական ստեղծագործության անկախության մասին խոսվում է խիստ զգուշավոր ու քողարկված։ Արտասահմանյան ժամանակակից գեղագիտության խոշորագույն ներկայացուցիչներ Բենեդետո Կրոչեն և Նիկոլայ Հարտմանը ընդունում են արվեստի փիլիսոփայական ու բարոյագիտական բովանդակությունը, չընդունելով, սակայն, արվես-



տագետի սոցիալ-քաղաքական հայացքների առկայությունը։ Բայց աշխարհայացքը չի կարող չբովանդակել սոցիալ-քաղաքական որևէ հայեցակետ։ Ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն հոդվածում, չի կարելի ապրել հասարակության մեջ և դուրս լինել հասարակությունից։ Արվեստագետը կարող է չգիտակցել իր քաղաքական հայացքները, իր դասակարգային միտումները, բայց, քանի որ դրանք առկա են այն հասարակության մեջ, ուր ինքն ապրում է, դրանով իսկ դրանք թափանցում են նրա գիտակցության ոլորտը։

Ստեղծելով իր գործերը՝ արվեստագետը ելնում է իրեն շրջապատող սոցիալական որոշակի պայմաններից։ Ուստի և դասակարգային հասարակության մեջ արվեստագետի աշխարհայացքը, հետևաբար և նրա արվեստը, չեն կարող դասակարգային բնույթ չկրել։ Այս մասին հիանալի է ասել Ռոմեն Ռոլանը. «Արվեստը միշտ մասնակցում է իր ժամանակի ճակատամարտերին նույնիսկ այն ժամանակ, երբ հաստատում է, թե իբր ինքը հեռացել է մարտադաշտից, երբ իր վրա է կրում «արվեստն արվեստի համար» մանկամիտ պիտակը։ Այս պիտակը կեղծ է։ Դուրս գալով մարտից՝ մարդը հաշիվ է տալիս նա իրեն այդ մասին, թե ոչ, Պոնտիոս Պիղատոսի նման լվանում է ձեռքերը սոցիալական անարդարությունների հանդիման, մաքրում է ճնշողների ճանապարհը և լռելյայն հաշտվում շահագործվողների ստրկացման հետ» (Собр. соч., т. 14, 1958, стр. 563)։

Բուրժուական գեղագիտությունը կոչ է անում ազատել արվեստը քաղաքականության բռնությունից, ստեղծագործելու ազատություն տալ արվեստագետին, պնդելով, թե արվեստի կուսակցականության սկզբունքն անհամատեղելի է ստեղծագործական ազատության հետ, քանի որ ենթադրում է բռնություն ստեղծագործական անհատականության նկատմամբ, շղթայում է արվեստագետին, փաթաթելով նրա վզին արվեստի համար օտար գաղափարներ, տեսակետներ, ձգտումներ, դրանով իսկ կործանարար ազդեցություն ունենալով արվեստի վրա։

Սակայն, ինչպես դա բազմիցս նշվել է մեր մամուլում, ճիշտ չէ արվեստի կուսակցականությունը հասկանալ սոսկ որպես պրոլետարական, կոմունիստական կուսակցականություն, հետևաբար, նաև միայն սոցիալիստական արվեստին հատուկ։ Չպետք է մոռանալ, որ կա բուրժուական կուսակցականություն ևս, որը հատուկ է բուրժուական արվեստին։ Այլ կերպ չի էլ կարող լինել։ Արվեստի կուսակցականությունը գաղափարագեղարվեստական կատեգորիա է։ Կուսակցականությունն ինքնին տարբեր գաղափարների, տարբեր աշխարհայացքների՝ պրոլետարականի (սոցիալիստականի) և բուրժուականի արտահայտության բարձրագույն ձևն է։ Բացահայտելով բուրժուական դիմակավորված կուսակցականության էությունը, որը սքողվում էր անկուսակցականության, ապաքաղաքականության լոզունգներով, Վ. Ի. Լենինը գրել է. «...ով գիտակցաբար կամ անգիտակցաբար բուրժուական կարգի կողմն է կանգնած, նա չի կարող հակում չզգալ դեպի անկուսակցականության գաղափարը» (ԵԼԺ, հ. 12, էջ 164)։ Կապիտալիստական հասարակարգում անկուսակցականությունը, Լենինի բնորոշմամբ, «...լոկ կուշտերի կուսակցությանը, իշխողների կուսակցությանը, շահագործողների կուսակցությանը պատկանելու կեղծավոր, քողարկված, պասիվ արտահայտություն է» (նույն տեղը, էջ 165)։

Իրականությունն արվեստի մեջ միշտ արտացոլված է որոշակի աշխարհայացքի մեկնակետից, քանզի արտացոլման լենինյան տեսության համաձայն, արվեստն իրականությունը ճանաչում է՝ բեկվելով արվեստագետի աշխարհայացքի, պատմության, իրադարձությունների, փաստերի նրա գնահատման ու ըմբռնման միջով։ Օբյեկտիվ իրականության գեղարվեստակերպարային ընկալման պրոցեսում ստեղծագործող անհատը, նրա կենսափորձը, տաղանդի յուրահատկությունները, նրա սոցիալական կողմնորոշումը իրենց կնիքն են դնում արվեստագետի գաղափարագեղագիտական դիրքորոշման վրա։

Գեղագիտական իդեալը կապված է հասարակական հարաբերությունների, հասարակական զարգացման ձևերի հետ։ Այն ձևավորվում է պատմական որոշակի պայմաններում և փոխվում է դրանց հետ միասին։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը ցույց են տվել, որ գեղագիտական իդեալը պայմանավորված է տվյալ

## Կուսակցական շինարարության

## տեսություն և պրակտիկա

# ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Ք. Լ. ՄԱՆԴԱԼՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության Լենինյան
շրջկոմի առաջին քարտուղար

ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ արդյունաբերական շրջանի կուսկազմակերպությունները, բոլոր կոմունիստները, ողջ աշխատավորությունը ակտիվորեն ներգրավվել են ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացման համար ծավալված համաժողովրդական պայքարի մեջ։ Նրանց համար գործողության ուղեցույց են ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթները, ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների այն բոլոր պահանջները, որոնք առնչվում են շրջանի աշխատավորական կոլեկտիվների գործունեության հետ։

Համագումարի արդյունքները համակողմանիորեն քննարկվել են շրջանային կուսակցական ակտիվի ժողովում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Կոմունիստներն իրենց ելույթներում ուշադրությունը սևեռել են շրջանի համար կենսական նշանակություն ունեցող խնդիրների լուծման և աշխատանքային թերացումների վերացման վրա, առաջ քաշել համագումարի որոշումների իրականացման գործում կուսկազմակերպությունների և յուրաքանչյուր կոմունիստի անձնական պատասխանատվության բարձրացման հարցը։ Դա ամբողջովին բխում է ընկեր Լ. Ի. Բրեժնևի այն ցուցումից, որ անհրաժեշտ է ուշադրությունը կենտրոնացնել թերությունների, չլուծված պրոբլեմների վրա։

ՍՄԿԿ XXVI համագումարի արդյունքների քննարկմանը նվիրված ժողովներում արված առաջարկություններն ու քննադատական դիտողությունները հանրագումարի ենք բերել կուսշրջկոմի բյուրոյում, միջոցառումներ մշակել դրանց կենսագործման համար, իսկ հանրապետական մարմինների իրավասությանը ենթակա հարցերը ներկայացրել ենք նրանց քննարկմանը։

Արտադրական կոլեկտիվների, ինչպես և ողջ շրջանի աշխատավորության առջև ծառացած խնդիրների լուծման շահերը պահանջում են ճշտորեն ու ժամանակին պարզել, թե հատկապես որ օղակներում պետք է կենտրոնացնել ուշադրությունն ու ուժերը, որպեսզի հնարավոր լինի էապես բարձրացնել կազմակերպական աշխատանքի մակարդակն ու արդյունավետությունը։ Համագումարից անմիջապես հետո, նրա արդյունքները կուսշրջկոմի պլենումում քննարկելու ժամանակ, առաջ քաշվեցին կազմակերպական աշխատանքի բարելավման, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման խնդիրները համագումարի նոր պահանջների լույսի ներքո։ Պլենումում նշվեց, որ կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած կազմակերպական աշխատանքի գլխավոր խնդիրը ամենից առաջ պետք է լինի էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման մակարդակի ըստ ամենայնի բարձրացումը, դրա վերաբերյալ համագումարի որոշումների հաջող կենսագործման կազմակերպումը։ Մեզ համար գործողության ուղեցույց է ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ ժողովրդական տնտեսության ճիշտ ղեկավարումը կուսակցության ու պետության գործունեության առանցքն է։ Չէ՞ որ հենց էկոնոմիկայի բնագավառում է դրվում սոցիալական խնդիրների լուծման, երկրի պաշտպանունակության ամրապնդման հիմքը, ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը։ Հենց այստեղ են ստեղծվում դեպի կոմունիզմ սովետական հասարակության հաջող առաջընթացի անհրաժեշտ նախադրյալները։

Շրջկոմը մշտապես իր տեսադաշտում է պահում արտադրության զարգացման և էկոնոմիկայի կառավարման կարևոր ուղղությունների, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, կապիտալ շինարարության արդյունավետության բարձրացման նպատակով սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքը։ Բյուրոյի նիստերում մենք բազմիցս անդրադարձել ենք արդյունաբերության առանձին ճյուղերի, կապիտալ շինարարության զարգացման հարցերին, որոնք օրգանապես շաղկապվում են Հայաստանի կոմկուսի կենտկոմի կողմից շրջանի կուսկազմակերպության առջև դրված խնդիրների հետ։ Խոսքը էկոնոմիկայի առաջատար ճյուղերի հեռանկարային զարգացման մասին է։ Տասնմեկերորդ հնգամյակում շրջանի աշխատավորական կոլեկտիվները լուծելու են այնպիսի բարդ խնդիրներ, որոնք բխում են առկա տնտեսական պոտենցիալի արդյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության կայուն աճի ապահովման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման անհրաժեշտությունից։ Նախատեսվում է իրականացնել արտադրության ինտենսիվացումն ապահովող կոմպլեքսային միջոցառումներ, տեխնիկապես վերազինել մի շարք ձեռնարկություններ, լայնորեն ներդնել գիտության ու տեխնիկայի նվաճումները, կատարելագործել արտադրության կառավարումը։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի 21 տոկոսով, նշանակալիորեն կավելանա ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, այդ թվում նաև ծանր արդյունաբերության ձեռնարկություններում։

Հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման խնդիրների հետևողական լուծման նպատակով այժմ բոլոր ձեռնարկություններում ուսումնասիրվում և վերլուծվում է գործերի վիճակը, մշակվում են կոմպլեքսային ծրագրեր, որոնք ներառում են տեխնոլոգիական, կազմակերպական և սոցիալ-տնտեսական միջոցառումների համակարգը։ Այդ խնդիրների լուծման գործում կազմակերպչական նախաձեռնություն ու ակտիվություն են դրսևորում սկզբնական կուսկազմակերպությունները՝ աշխատավորական կոլեկտիվների փորձված ավանգարդը։

Եվ, անտարակույս, եթե խոսելու լինենք այն գլխավորի մասին, որը եղել և կազմում է մայրաքաղաքի Լենինյան շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության բովանդակությունը, ապա դա, առաջին հերթին, ողջ աշխատանքը այնպես կազմակերպելու ձգտումն է, որպեսզի ապահովվեն դրա բարձր արդյունավետությունն ու որակը, էկոնոմիկայի զարգացման, կոմունիստական բարձր գիտակցականության կոնկրետ արդյունքների ձեռքբերումը կուսակցական ազդեցության այնպիսի ձևերի և մեթոդների կիրառմամբ, որոնք լավագույնս համապատասխանեն արդի պահանջներին։ Կուսկազմակերպությունների, բոլոր ընտրովի մարմինների (կուսշրջկոմից սկսած մինչև արտադրամասային կուսբյուրոները) պրակտիկայում արմատավորված կարևոր տարր է դարձել կուսակցական աշխատանքի հեռանկարային պլանավորումը։

Նորը, որ վերջին տարիներին հաստատուն տեղ է գրավել կուսկազմակերպությունների պրակտիկայում, հեռանկարային պլանների և կոլեկտիվների տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանների առավել սերտ փոխկապակցումն է։ Կուսշրջկոմը ձգտում է, որպեսզի պլանավորումը լինի իրոք կոլեկտիվ գործ և նրա կազմմանը մասնակցեն ոչ միայն ապարատի աշխատողները, այլև լայն ակտիվը։ Եթե նախկինում առանձին հարցեր դուրս էին մնում կուսկազմակերպությունների տեսադաշտից, իսկ այլ հարցեր, ընդ-

հակառակը, չափից ավելի հաճախ էին դառնում քննարկման առարկա, ապա հեռանկարային պլանավորմանն անցնելուց հետո հանգամանորեն ճշտվում են գլխավոր հարցերը, որոնք պետք է քննարկվեն հաշվետու ժամանակաշրջանում:

ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում շրջանային կուսկազմակերպությունում տեղի ունեցան կառուցվածքային զգալի փոփոխություններ: Արտադրամասային կուսկազմակերպությունների քանակն ավելացել է 45-ով, կուսակցական խմբերինը՝ 120-ով: Շրջանի կազմակերպության կառուցվածքային փոփոխությունների վրա վճռական ազդեցություն գործեցին արտադրության հետագա կենտրոնացման ու մասնագիտացման պրոցեսը, գիտության հետ նրա կապի միացումը, արտադրամիավորումների լայն ցանցի ստեղծումը: Այժմ միավորումները գործում են արդյունաբերության գրեթե բոլոր բնագավառներում: Փորձը համոզիչ կերպով ցույց է տվել, որ միավորումներում միասնական կուսկազմակերպության ստեղծումը հնարավոր դարձրեց ապահովել արդյունավետ ներգործությունը ինչպես կոլեկտիվների ձևավորման, այնպես էլ արտադրության կազմակերպման ու կառավարման այդ առաջավոր ձևի առավելությունների գործադրման վրա: Արտադրական 20 միավորումների կուսկազմակերպություններն իրենց շարքերում այժմ ունեն ավելի քան յոթ հազար կոմունիստ: Նրանց կուսակցական կառուցվածքի կատարելագործումը հնարավորություն է ընձեռել բարձրացնել ստորին օղակների մարտունակությունը, ապահովել կոմունիստների ավանգարդային դերը արտադրության վճռական տեղամասերում:

Շրջանի կուսկազմակերպությունում տեղի ունեցող կառուցվածքային փոփոխությունները նպաստում են կուսակցական ղեկավարման առավել ներգործուն ձևերի մշակմանն ու կիրառմանը: Այդ իրողության ցայտուն օրինակ է «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում ընդլայնված կազմով կուսկոմիտեի և քարտուղարների խորհրդի ստեղծումը: Ինչի՞ մասին է վկայում այդ փորձը: Կոմիտեն դարձավ առավել ներկայացուցչական, այն լիովին արտացոլում է կուսկազմակերպության սոցիալական կազմը, նրա 40 տոկոսը բանվորներ են: Կոմիտեի կազմում բանվորական միջուկի ավելացումը նպաստել է նրա մարտունակության բարձրացմանը, ամրապնդել կուսակցական ղեկավար մարմինների կապը արտադրամասային կազմակերպությունների հետ, իսկ նրանց միջոցով՝ արտադրության, աշխատավորների հետ: Կարևորը նաև այն է, որ կոմիտեի կազմում ընտրված բանվորները ձեռք են բերում կուսակցական և քաղաքական աշխատանքի փորձ:

Ընդլայնված կազմով կուսկոմիտեում ներգրավվում են ավելի շատ մասնագետներ, որոնք ակտիվորեն մասնակցում են արտադրության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, նպաստում են կոնստրուկտորական և տեխնոլոգիական բաժինների գործունեության բարելավմանը, ձեռնարկության ինժեներատեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը:

Արտադրական և գիտաարտադրական խոշոր միավորումների կոմունիստների նախաձեռնությամբ երևան են եկել բազմաթիվ հիանալի նախաձեռնություններ, այդ թվում նոր տեխնիկայի մշակման և յուրացման ժամկետների զգալի կրճատման հիման վրա գիտատեխնիկական առաջընթացի արագացման, յուրաքանչյուր նոր արտադրանք պետական որականիշով թողարկելու համար ծավալված շարժումները: Միավորումներում արմատավորվել են բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և գիտնականների համագործակցության նոր ձևեր: Այստեղ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանների հիման վրա շարժում է ծավալվել հնգօրյա առաջադրանքը չորս օրում կատարելու համար: Այդ նախաձեռնությունը տասներորդ հնգամյակում վերածվեց մասսայական մրցության՝ «Յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակից՝ կոլեկտիվի աշխատանքի բարձր արդյունավետության» նշանաբանով:

Ոչ քիչ նորույթներ են ի հայտ եկել շինարարական կուսակցական կազմակերպություններում: «Երքիմշին» տրեստը կատարում է շինմոնտաժային մեծ ծավալի աշխատանքներ, որոնցով էապես պայմանավորված են շրջանի արդյու-



նաբերական պոտենցիալի աճը, նրա առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծումը: Վերջին երկու տարում տրեստի կուսկոմիտեի աշխատանքում նկատելի են որոշակի տեղաշարժեր. բարձրացել է պահանջկոտությունը, փոխվել է վերաբերմունքը եղած թերությունների նկատմամբ: Արմատավորելով տնտեսավարման նոր մեթոդը՝ անցումը տնտհաշվարկային բրիգադներին, կուսկոմիտեն միաժամանակ ձեռնարկել է կոնկրետ կազմակերպական միջոցներ՝ նրանց կուսակցական միջուկը ամրապնդելու, կայուն աշխատանքային կոլեկտիվներ ստեղծելու գործում:

Դրա հետ միասին, հարկ է նշել, որ մի շարք սկզբնական կուսկազմակերպությունների կառուցվածքը դեռևս չի համապատասխանում կյանքի արդի պահանջներին: Ինչպես հայտնի է, վերջին տարիներին տեղի է ունենում շինարարական կազմակերպությունների մասնագիտացում: Այդ կապակցությամբ էլ հաճախ կառույցներում միանգամից աշխատանք են տանում մի քանի համաշինական մոնտաժային և մասնագիտացված վարչություններ: Առաջադրանքների հստակ կատարման ապահովումը, շինարարությունը ժամանակին ավարտելու շահերը պահանջում են կոորդինացնել բոլոր ստորաբաժանումների գործունեությունը: Դա, անշուշտ, կոչված են անելու կառույցների, դրանց տեղամասերի ղեկավարները: Բայց շատ բանով նրանց պետք է օգնեն նաև տվյալ ստորաբաժանման կոմունիստները: Անմիջականորեն կառույցներում իրենց լավ կդրսևորեն նաև ժամանակավոր կուսխմբերը: Կարծում եմ, որ մենք դեռևս բավարար վճռականություն չենք դրսևորում խոշոր արդյունաբերական օբյեկտների կառուցմամբ զբաղված տարբեր գերատեսչությունների և կազմակերպությունների տասնյակ կոլեկտիվների կուսակցական ուժերի միավորման գործում: Անկախ գերատեսչական պատկանելիությունից՝ կարևոր օբյեկտների կառուցման բոլոր մասնակիցներին միավորող միասնական կուսկազմակերպությունների, ժամանակավոր կուսխմբերի ստեղծումը կնպաստեր ծագած հարցերի առավել օպերատիվ լուծմանը, նոր կարողությունների գործարկման ժամկետների կրճատմանը:

Արդի պայմաններում կուսկազմակերպություններին ավելի ու ավելի հաճախ է հարկ լինում լուծել խոշոր պրոբլեմներ, խորությամբ թափանցել էկոնոմիկայի և կառավարման մեխանիզմի մեջ: «Եթե ամեն մի կուսակցական կազմակերպություն,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— իր տեղամասում օգտագործի բոլոր ռեզերվները, պատշաճ կարգուկանոն հաստատի ամեն ինչում, ապա ամբողջ երկրի գործերը նույնպես ավելի առաջ կգընան»: Այդ պահանջները լիովին վերաբերում են նաև մեզ: Շրջանի առանձին կոլեկտիվներ չեն կատարում ոչ միայն սոցիալիստական պարտավորությունները, այլև արտադրանքի իրացման և աշխատանքի արտադրողականության աճի պլանային առաջադրանքները: Մի շարք շինվարչություններ թերակատարում են կապալային աշխատանքի ծրագիրը, որի պատճառով ձախողվում է արդյունաբերական օբյեկտների, ինչպես նաև բնակելի տների և կուլտուր-կենցաղային նշանակության շենքերի գործարկումը: Ոչ ամենուրեք են հոգատարությամբ վերաբերվում սոցիալիստական սեփականությանը, որոշ տեղերում ոչ ռացիոնալ են օգտագործում նյութական ու ֆինանսական ռեսուրսները: Այդ մասին լուրջ խոսակցություն եղավ շրջանային կուսկազմակերպության XXXI կոնֆերանսում:

Արծարծված հարցերի կապակցությամբ կկամենայի առանձնացնել սկըզբունքային մեկ հարց. ինչպե՞ս են սկզբնական կուսկազմակերպությունները կիրառում ՍՄԿԿ կանոնադրության այնպիսի կարևոր պահանջ, ինչպիսին է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունքը: Այդ աշխատանքը, ինչպես հայտնի է, հիմնվում է ոչ թե տնտեսական ղեկավարների ադմինիստրատիվ-կարգադրիչ ֆունկցիաների մեջ խառնվելու վրա, այլ բոլոր օղակներում կուսակցական ազդեցության ուժեղացման, կոլեկտիվներում ստեղծագործական աշխատանքի մթնոլորտի ստեղծման, ռեզերվների օգտագործման համար մարդկանց մոբիլիզացման, գիտության ու տեխնիկայի նվաճումների և առաջավորների փորձի լայն ներդրման վրա:

Իր հիանալի ավանդույթներով ու համախմբվածությամբ հայտնի է «Նաի-

րիտ» գիտաարտադրական միավորման կուսկազմակերպությունը (կուսկոմիտեի քարտուղար՝ Բ. Գալուստյան)։ Ամենապատասխանատու պահերին, ամենաբարդ տեղամասերում որպես կազմակերպող ուժ միշտ հանդես են գալիս կոմունիստները։ Մեկտեղ միավորելով բանվորների ու վարպետների, մասնագետների ու ղեկավարների փորձը՝ նրանք ողջ կոլեկտիվի ուժերը նպատակամղում են ձեռնարկության առջև ծառացած խնդիրների լուծմանը, առաջինն են գնում այնտեղ, ուր առավել դժվար է։ Բուտադիենից քլորոպրենի ստացման նոր արտադրության յուրացման նպատակով կուսկոմիտեն այնտեղ մշտական աշխատանքի գործուղեց 35 կոմունիստների, որոնք մեծապես նպաստում են բանվոր-կիրովցիների լավագույն հատկանիշների հաստատմանը, պրոֆեսիոնալ վարպետության բարձրացմանը, կարգապահության ամրապնդմանը։ Եվ պատահական չէ, որ հենց այդ կոլեկտիվից ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ ընտրվեց կոմունիստ բանվոր Ս. Պետրոսյանը։

Նախկինում խիստ քննադատության են ենթարկվել «Պլաստիկ» արտադրամիավորման կուսկազմակերպությունն ու ղեկավարությունը՝ պետական պլանները սիստեմատիկաբար թերակատարելու, կուսակցական-պետական կարգապահության ցածր մակարդակի համար։ Ղեկավարությունը, կուսկազմակերպությունը, սակայն, կարողացան փոխել վիճակը և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ՝ աշխատանքում տեղ գտած թերությունները վերացնելու համար։ Այստեղ արդեն կայուն կերպով կատարվում են պլանային առաջադրանքները, 1981 թ. թողարկվող արտադրանքը, 1980 թ. համեմատությամբ, կաճի 14,3 տոկոսով։

Արտադրանքի թողարկման առաջադրանքի կատարման և ասորտիմենտի ընդլայնման վիճակը կարգավորվել է նաև «Հայհախճապակի» արտադրամիավորումում։ Կուսկազմակերպության հետևողական գործունեության շնորհիվ մեծ ծավալի աշխատանքներ են կատարվել արտադրության տեխնիկական վերազինման ու պայմանների բարելավման, թողարկվող արտադրանքի նորացման և որակի բարձրացման նպատակով։ Իր հասցեին կուսշրջկոմի սուր քննադատությունից ճիշտ եզրակացություն է արել և վերակառուցել աշխատանքը նաև «Հայկենցաղքիմ» արտադրամիավորման կուսկազմակերպությունը։

Կարելի է օրինակներ նշել նաև շրջանի այլ կուսկազմակերպություններից, որոնք ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ իրենց վերահսկողության ֆունկցիայից օգտվում են ոչ թե ձևականորեն, այլ ստեղծագործաբար՝ հանուն գլխավոր խնդրի լուծման։

Դրա հետ միասին ոչ ամենուրեք են հստակորեն պատկերացնում վերահսկողության էությունը, որն առաջին հերթին նշանակում է լրիվ պատասխանատվություն կրել կոլեկտիվի գործերի վիճակի համար։ Հենց դրանով պետք է բացատրել, որ 1981 թ. առաջին կիսամյակի իրացման ու համախառն արտադրանքի պլանները չեն կատարել երկու ձեռնարկություն։ Վերցնենք, օրինակ, մահուդի ֆաբրիկան։ Ձեռնարկության վերակառուցմանն առնչվող օբյեկտիվ շատ պատճառների հետ միասին, որոնք դժվարացնում են պլանային առաջադրանքների կատարումը, կան նաև սուբյեկտիվ գործոններ, որոնք և դարձել են պլանների թերակատարման հիմնական պատճառները։ Հսկայական են սարքավորումների պարապուրդները, թույլ է աշխատանքային կարգապահությունը, անբավարար է որակյալ կադրերի պատրաստման գործը։ 1980 թ. ֆաբրիկա եկած 53 որակյալ բանվորներից ներկայումս շարունակում են աշխատել միայն 31-ը։ Նման թերությունների համար կուսշրջկոմի բյուրոն վերջերս ստիպված էր կուսակցական խիստ պատժի ենթարկել ֆաբրիկայի դիրեկտոր Ժ. Ղազարյանին։

Շրջանի մի շարք ձեռնարկություններում շարունակում է ցածր մակարդակի վրա գտնվել կուսակցական ու պետական կարգապահությունը, չի ապահովվում հաշվետու տվյալների հավաստիությունը, տեղիք են տրվում հավելագրումների։ Այդպիսի թերությունների համար կուսակցական խիստ տույժով աշխատանքից հեռացվել է մետաղյա կառուցվածքների գործարանի դիրեկտորը։ Նոր ղեկավարությունը (դիրեկտոր՝ Հ. Համբարձումյան) անցած տարի նորից կեղծել է աշ-



խատանքի արտադրողականության, նոմենկլատուրայի, ինքնարժեքի հաշվետու տվյալները։ Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն խիստ պատժեց գործարանի ղեկավարին, սակայն սկզբնական կուսկազմակերպությունը մինչև օրս փաստերին կուսակցական գնահատական չի տվել։ Այդպիսի երևույթներ են եղել նաև Երևանի քաղսովետի շինարարական իրերի գործարանում։ Կուսշրջկոմն անդրադարձավ այդ հարցերին և միջոցներ ձեռնարկեց բացահայտված թերությունները վերացնելու, այդ ձեռնարկությունների ղեկավարության պատասխանատվությունը բարձրացնելու համար։

Սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում նկատելի դեր են խաղում փոքրաթիվ կուսկազմակերպությունները, դրանք գործում են ոչ մեծ կոլեկտիվներում, բայց նրանց ակտիվ գործունեությամբ է պայմանավորված բնակչության կուլտուրական, կենցաղային, առևտրի և բժշկական սպասարկման հետագա բարելավումը, քաղաքի բնակիչների տրամադրությունը, նրանց պահանջմունքների բավարարումը։ Շրջկոմի բյուրոյում բազմիցս քննարկել ենք շրջանի փոքրաթիվ կազմակերպությունների գործունեության տարբեր կողմերին վերաբերող հարցեր և նրանց շարքերի աճի համար ստեղծել բոլոր պայմանները։

Սակայն կուսշրջկոմը ևս լիովին չի օգտագործում ներկուսակցական կյանքի աշխուժացման հնարավորությունները այդպիսի յուրաքանչյուր կազմակերպությունում։ Մի շարք կազմակերպություններում պարբերաբար չեն հրավիրվում կուսակցական ժողովներ, երբեմն դրանք նախապատրաստվում են հապճեպ, ընդունված որոշումները ոչ միշտ են ամրապնդվում կազմակերպչական աշխատանքով և գործնական վերահսկողությամբ։ Կուսկազմակերպությունները անբավարար են օգտվում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրենց իրավունքից։

Կուսկազմակերպությունների աշխատանքի մակարդակի բարձրացումն անխզելիորեն կապված է կուսկոմիտեների գործունեության հետ։ ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան՝ այդպիսիք ստեղծվել են շրջանի 12 խոշոր միավորումներում և ձեռնարկություններում։ Կուսկոմիտեները կոչված են իրականացնելու կուսակցական ստորին օղակների անմիջական ղեկավարությունը։ Իսկ դա նշանակում է՝ առաջին հերթին առանձնացնել գլխավոր, հանգուցային պրոբլեմները, սկզբնական կուսկազմակերպության ողջ ջանքերը կենտրոնացնել դրանց լուծման վրա։ Դա միաժամանակ ենթադրում է խոր գիտելիքներ, գործնական և քաղաքական հատկանիշներ ունեցող կադրերի առկայություն։

Շրջանի կուսկոմիտեների համար բնութագրական է դարձել աշխատանքի ոճի կատարելագործման, առավել արդյունավետ ձևերի ու մեթոդների որոնման ձգտումը։ Դրանց մեծ մասի պրակտիկայում հաստատուն տեղ են գրավել ստորին օղակների դրական փորձի ուսումնասիրումը, ընդհանրացումը և տարածումը։

Կոշիկի «Մասիս» արտադրամիավորման կուսկոմիտեն խելամիտ ու արդյունավետ աշխատանք է տանում սկզբնական կազմակերպությունների հետ, հոգում նրանց հեղինակության բարձրացման մասին։ Ժողովներում և բյուրոների նիստերում, սեմինարներում ու խորհրդակցություններում քննարկվում են այնպիսի հարցեր, որոնք ուղղակի ազդեցություն են գործում կուսկազմակերպությունների գործունեության բարելավման վրա։ Շատ բան է արվել կուսխմբերի մարտունակության բարձրացման նպատակով։ Որոշումների կոնկրետությունը, վերահսկողության հստակությունը նպաստել են կոմունիստների ավանգարդային դերի բարձրացմանը։ Միավորման կուսանդամների գրեթե 90 տոկոսը մասնակցում է կոմունիստական աշխատանքի շարժմանը, նրանցից շատերն ունեն անհատական ստեղծագործական պլաններ, խնայողության անձնական հաշիվներ, որակի անձնական դրոշմ, կոմունիստների 85 տոկոսին տրված է մշտական կուսակցական հանձնարարություն։ Կուսկոմիտեն սիստեմատիկաբար վերլուծում է կուսժողովների օրակարգի հրատապությունը։ Դա հնարավորություն է ընձեռում օպերատիվ կերպով շտկումներ մտցնել հեռանկարային պլաններում, բացառել աշխատանքի միայն մի կողմով հրապուրվելը։ Այդ ամենը անմիջականորեն ազդում է արտադրական կոլեկտիվների բարոյահոգեբանական մթնոլորտի լավացման, նրանց տնտեսական գործունեության վրա։

րոների նիստերին, մինչդեռ արտադրամասերում, տեղամասերում, բրիգադներում և կուսխմբերում շատ ավելի հազվադեպ են լինում։ Բայց չէ՛ որ հենց մարդկանց հետ հաղորդակցվելու միջոցով է հնարավոր իմանալ նրանց տրամադրությունը, հոգսերը, դժվարությունները։ Հարկավոր է մշտապես հիշել, որ յուրաքանչյուր զրույց, հուզող հարցի յուրաքանչյուր բանիմաց պատասխան ունեն դաստիարակչական նշանակություն։

Կուսկազմակերպություններում իսկական ստեղծագործական իրադրության հաստատման գործում վճռական տեղ է պատկանում ընտրովի կուսակցական ակտիվին։ Նրա անմիջական մասնակցությամբ սկզբնական կուսկազմակերպությունները գտնում են տնտեսական և կուլտուրական շինարարության արմատական խնդիրների լուծման առավել արդյունավետ ուղիներ։ Կուսշրջկոմը ամենօրյա գործունեության ընթացքում, հենվելով իր ընտրովի ակտիվի վրա, լայնորեն կիրառում է կոլեկտիվի ղեկավարման լենինյան սկզբունքները, բարձրացնում սկզբնական կուսկազմակերպությունների բոլոր օղակների մարտունակությունը։

Շրջանի կուսակցական ընտրովի ակտիվը դա ավելի քան չորս հազար կոմունիստներն են՝ կուսկազմակերպության գրեթե մեկ երրորդը։ Ներկայումս բոլոր ազատված քարտուղարները և նրանց տեղակալներն ունեն բարձրագույն կրթություն, տվյալ ճյուղի մասնագետներ են, կուսակցական աշխատանքում առաջադրվել են արտադրությունից։ Բարձրագույն կրթություն ունի նաև շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 70 տոկոսը, դրանց կեսից ավելին ավարտել է տեխնիկական ուսումնական հաստատությունները։ Կուսակցական ղեկավար մարմիններում ընտրված կոմունիստները ճնշող մեծամասնությամբ իրենց նկատմամբ եղած վստահությունն արդարացնում են հասարակական և արտադրական լավագույն գործերով։

Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները, նրանց կոմիտեներն ու բյուրոները ամեն կերպ ջանում են բարելավել կուսակցական-կազմակերպական աշխատանքը, խորացնել դրա բովանդակությունը, այն լիովին ի սպաս դնել շրջանի աշխատանքային կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Կոմունիստները, աշխատավորները լի են վճռականությամբ՝ պատվով կատարելու տասնմեկերորդ հնգամյակի պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

---

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

**ԻՆՉ ՀԱՄԱՐ ԴԺՎԱՐ ՉԷ** մտաբերել այն
հարցերը, որ տվել եմ Բաղդասար Այվազյա-
նին՝ օգտվելով նրա սիրալիրությունից, պատ-
րաստակամությունից։ Ծոցատետրս, որ կբա-
վականացներ երեք-չորս ակնարկի համար (ես
նկատի ունեմ նշումների առատությունը),
պարզապես շնչում է Այվազյանով. և՛ միա-
միտ-ուրախ մանկությունը, որ անցկացրել է
Դոնի տափաստաններում, և՛ պատկառելի
պապը, որի առջև մարդիկ գլխարկ էին հա-
նում, և՛ մայրը, որ մանչուկին միայն սիրել գի-
տեր, և՛ հայրը, որ ամենօրյա հոգս ու գործի
մեջ էլ միշտ կայտառ էր մնում, և՛ դպրոցական
բազմաթիվ չարաճճիությունները, և՛ մեծ Հայ-
րենականի հոգեցունց տագնապներ, և՛ ուրա-
խություններ խաղաղ օրերի, և՛ էլի դեպքեր,
փաստեր, իրադարձություններ՝ հավասարապես
գրավիչ ու հետաքրքրական...

— Մարդուն հացի պես, օդի պես, ջրի պես
անհրաժեշտ է նաև ճշմարիտ խոսքը,— ասում է
պրոպագանդիստ Բ. Այվազյանը, ապա շարու-
նակում,— եթե մենք ուզում ենք, որ մարդիկ
մեզ լսեն, օգտակար ու անհրաժեշտ մտորում-
ներ ունենան, նախ և առաջ պարտավոր ենք
մեր խոսքը, բառի բուն իմաստով, շաղախել
բարությամբ։ Ունկնդիրը պետք է զգա, որ իրեն
ուղղված ամեն մի խոսք, բառ, արտահայտու-
թյուն բխում է սրտից։ Մենք ունկնդրին մեր
խատությամբ լավագույնս միայն կարող ենք
պարտադրել, որ նա լռի, իսկ պարտադրել, որ
նա լսի, դա արդեն ուժից վեր է։ Կերպավորել
արդի մարդու աշխարհայացքը, օգնել նրան,
որ ճիշտ կողմնորոշվի գաղափարախոսական
պայքարում, ըմբռնի իր տեղն ու դերը հասա-
րակական կյանքում, դառնա հասարակական
առաջընթացի կրողն ու արտահայտիչը և կա-
րողանա նպաստել նույն այդ հասարակական
կյանքի բարգավաճմանն ու զարգացմանը, չի
նշանակում միայն մարդկանց զինել ճիտ գա-
ղափարախոսությամբ։ Նույնքան կարևոր է և
նույն այդ մարդու արժանապատվությունը։

Հետզհետե մեր զրույցն ավելի գործնական
բնույթ է ստանում։ Ես հաճությամբ եմ ունկն-
դրում պրոպագանդիստին։

— Նույն լսարանում, նույն հարկի տակ հա-
վաքվում են տարբեր ընդունակության տեր
մարդիկ։ Նրանք ցանկանում են հարստացնել
իրենց քաղաքական գիտելիքները, բայց բո-
լորը չէ, որ կարող են իրենց նպատակին հաս-
նել,— նկատում է Այվազյանը։— Այստեղ ա-
վելորդ ու անթույլատրելի են հանդիմանանքը,
սուր խոսքը, բացահայտ դժգոհությունն այն
ձևով, ինչպես դա կարելի է դպրոցներում, ին-
ստիտուտներում, զանազան դասընթացներում։

Պրոպագանդիստական աշխատանքի վերա-
բերյալ մենք քննարկեցինք բազմաթիվ հար-
ցեր։ Այսպես, օրինակ, ի՞նչ է նշանակում
մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությունը
արդյունավետ պրոպագանդել, ինչպե՞ս մարդ-
կանց շրջանում կենդանի հետաքրքրասիրու-
թյուն հարուցել այդ գաղափարախոսության
նկատմամբ։ Լենինի խոսքերով ասած, ինչպե՞ս
առավելապես ներազդել տվյալ լսարանի վրա,
նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնե-
լով առավել համոզիչ։ Ի՞նչ ձևով հասնել կու-
սակցական ուսուցման արդյունավետության,
որն այնքան կարևորվեց ՍՄԿԿ XXVI համա-
գումարում, այդպիսի արդյունավետության ի՞նչ
չափանիշներ կան։

Տարբեր են գնահատվում այն մարդիկ, ով-
քեր սեմինարներում հանդես են գալիս դա-
սախոսությամբ, զեկուցումով կամ անցկացնում
են զրույցներ։ Այստեղ, անկեղծ ասած, զար-
մանալի ոչինչ չկա, չէ՛ որ խոսքը տարբեր
մարդկանց մասին է։ Մեկը, ինչպես ասում են,
կարող է հիացնել ունկնդրին, նվաճել մտքի
խորությամբ, ուշադրությունը բևեռել հատկա-
պես այնպիսի հարցերի վրա, որոնք անհան-
գըստացնում են շատերին, կարող է վկայակո-
չել հետաքրքրական փաստեր և խոսել տպա-
վորիչ, պատկերավոր լեզվով։ Ուրիշները հան-
դես են գալիս պակաս հաջողությամբ, նրանց
բերած փաստարկները, օրինակները տպավո-
րիչ չեն, չեն հիշվում կամ հիշվում են ոչ եր-
կար։ Դա լինում է այն ժամանակ, երբ պրո-
պագանդիստի խոսքը, թեկուզ և հագեցած ան-
հրաժեշտ փաստերով ու տվյալներով, չի հա-
րուցում նոր մտքեր, չի հրահրում դրական
հույզեր, ամեն ինչ ասվում է խառնաշփոթ և
անկապ ձևով, անկենդան լեզվով։

«Խոսվեց շատ, բայց ոչինչ չասվեց»— ահա
թե սովորաբար ինչպես են գնահատվում նման
ելույթները։

Անկասկած, աստեղ իր վճռորոշ դերն ունեն
պրոպագանդիստի զարգացածության աստի-
ճանը, ինչպես նաև զինվածությունը այն բո-
լորի իմացությամբ, որ կոչվում է ճարտասա-
նական խոսք։

նյութերի հատկապես այն դրույթները, որոնք ավելի շատ են առնչվում իրենց տնտեսության խնդիրներին: Դրանք ուսումնասիրել են կոմունիստները:

— Հնգամյակի երկրորդ տարում շահագործման կհանձնվի Հախումի ջրամբարը,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— որը միայն մեր սովխոզում ջուր կտա 500 հեկտար հողերի: Դրանով իսկ ոռոգելի կդառնան մեր ունեցած բոլոր հազար հեկտար հողատարածությունները: Կիրականացվի մեր հողագործների շատ սերունդների երազանքը: Միայն մեր օրերում հնարավոր դարձավ ջրաշինարարությանը, ջրասակավ մեր հանրապետության հողերի յուրացմանը հատկացնել դրամական զգալի միջոցներ, հսկայական տեխնիկա, մարդկային ուժեր ու ժամանակակից գիտության նվաճումները: Այս վիթխարի հնարավորությունները մենք պետք է արդյունավետ օգտագործենք:

Կոմունիստներ, գլխավոր գյուղատնտես Հենրիկ Բոզինյանը, բրիգադավար Սաշիկ Միրզոյանը, շարքային բանվոր Լիպարիտ Ավագյանը, արհմիութենական կոմիտեի նախագահ Գրիգոր Դալլաքյանը, տնտեսագետ Սարգիս Միրզոյանը իրենց ելույթներում նշեցին ՀԿԿ XXVII համագումարում առաջ քաշված այն հարցերը, որոնք բառացիորեն պետք է իրագործվեն իրենց սովխոզում: Այսպես, ջրատընտեսական օբյեկտների պլանավորման, նախագծման և կառուցման գործում եղած լուրջ վրիպումների ու սխալների հետևանքով արդեն կառուցված ջրամբարներին ենթակա հողերի գյուղատնտեսական յուրացումը իրականացվում է մեծ հապաղումով: Այս պրոբլեմին,— ասաց Հ. Բոզինյանը,— մենք կբախվենք առաջիկայում, և սա լուրջ նախազգուշացում է, որ պատրաստ լինենք ընդունելու Հախումի ջրամբարի ջուրը:

Ջրամբարը ոռոգելի կդարձնի հացահատիկի, բազմամյա խոտաբույսերի դաշտերը, նոր տընկվելիք 23 հեկտար խաղողի, 150 հեկտար պըտղատու այգիները: Ինչպիսի՞ նախապատրաստական աշխատանքներ են տարվում այդ տարածություններում: Իսկ ինչպե՞ս է օգտագործվում ջուրը ներկայումս ոռոգվող 500 հեկտար հողերում, ի՞նչ վիճակում են ոռոգման համակարգերն ու ներտնտեսային ցանցերը, ի՞նչ է արվում ձնահալոցքներից, գարնան հեղեղներից մեծ դժվարությամբ կուտակվող ջուրը խընայողաբար օգտագործելու համար, հարցեր, որոնք սրությամբ շեշտվեցին Հայաստանի կոմկուսի վերջին համագումարում: Ելույթ ունեցողները մի շարք լուրջ թերություններ նշեցին այդ բնագավառում: Հատկապես կոմունիստ բրիգադավարները, որոնք տարիներ շարունակ առատ բերք են ստանում և լավագույնն են ճանաչվել շրջանում, իրենց հաշվումներով ցույց տվեցին, որ այդ պահանջները ճշգրիտ կիրառելու դեպքում ավելի բարձր արդյունքների կարող են հասնել: Նրանք առաջ քաշեցին նաև այգիների նոսրության վերացման ու սորտերի բարելավման անհրաժեշտությունը:

Քննարկումն անցավ գործարար մթնոլորտում, իսկ ժողովից հետո բոլորի տրամադրությունը լավ էր: Նրանք արդեն մտովի տեսնում էին տնտեսության դաշտերն ու այգիները հնգամյակի ավարտական տարում: Ընդհանուր արդյունքը կլինի այսպիսին. 1980 թվականի 774-ի փոխարեն 1985 թվականին կարտադրվի մոտ 4.000 տոննա պտուղ, իսկ խաղողի արտադրությունը կգերազանցի այդ ցուցանիշը: Բացի այդ, բարձր բերք կստանան հացահատիկի և ցանովի խոտաբույսերի այն ժամանակ արդեն ոռոգելի դարձած դաշտերից, իսկ կերի առատության շնորհիվ հնարավորություն կըստեղծվի անասնապահությունը փոխադրել մըսուրային պահվածքի:

Ժողովը խթան հանդիսացավ նաև նոր ուղիների ու ռեզերվների որոնման ճանապարհին: Ինչպե՞ս ապահովել բոլոր տեղամասերի համաչափ աշխատանքը: Կուսբյուրոյի այդ հարցին նվիրված նիստում քննարկվում էր № 4 բրիգադի բրիգադավար Սարգիս Հովհաննիսյանի զեկուցումը: Ինչո՞ւ: Չէ՞ որ նրա բրիգադը բոլոր ցուցանիշներով կատարել ու գերակատարել է հնգամյա պլանը, այդ թվում խաղողի արտադրությանը՝ 107 տոկոսով: Պատճառն այն է, որ դա ութ բրիգադների մեջ ամենացածր արդյունքն է: Ինչո՞ւ Ալան Մարդանյանի բրիգադում այդ ցուցանիշը 125 տոկոս է: Համանման պայմաններում ինչպե՞ս առաջացավ այդքան մեծ տարբերությունը: Պարզվեց, որ № 4-ում այգիները նոսր են, չեն կատարվել անդալիսներ, համեմատաբար ցածր է աշխատանքի որակը, թույլ է կարգապահությունը: Բրիգադին կցվեց բյուրոյի անդամ, գլխավոր գյուղատնտես Հ. Բոզինյանը:

Մարտի վերջին նույն ձևով քննարկվեց № 7 բրիգադի բրիգադավար Սաշիկ Միրզոյանի զեկուցումը, որը հնգամյակի արդյունքներով գրավել էր նախավերջին տեղը:

Կուսակցական ժողովում սոցիալիստական մրցության կազմակերպման հարցի քննարկման ժամանակ կարևոր առաջարկություններ արեց արհմիութենական կոմիտեի նախագահ, կոմունիստ Գրիգոր Դալլաքյանը: Անասնապահության բնագավառում մրցության արդյունքներն ամփոփվում են յուրաքանչյուր ամիս, հաղթողներին շնորհվում են հուշադրոշներ և երեք կարգի դրամական մրցանակներ, և արդյունքը գոհացուցիչ է: Իսկ ինչպե՞ս է դա արվում մյուս ճյուղերում:

— Այգեգործության ու դաշտավարության բնագավառներում մրցության արդյունքներն ամփոփում են տարին մեկ անգամ՝ բերքահավաքից հետո,— ասաց Գ. Դալլաքյանը,— դա, իհարկե, ճիշտ է արտացոլում գործերի վիճակը՝ հեկտարները հայտնի են, բերքը՝ հավաքված ու կշռված. խնդրեմ, հաղթողները թող վայելեն իրենց աշխատանքի պտուղները: Բայց դա գործին համարյա չի օգնում:

Ժողովը, քննարկելով Գ. Դալլաքյանի առաջարկը, որոշեց դաշտավարության բնագավառում մրցության արդյունքներն ամփոփել այգիների ու դաշտերի յուրաքանչյուր սեզոնային աշխատանքից հետո: Այս դեպքում, հաղթողն ու ետ մնացողը որոշվելուց բացի, կբացահայտվեն թերությունները, խոտան աշխատանքը, և սխալի ժամանակին ուղղումը կնպաստի բարձր բերքի ապահովմանը:

## ԳՅՈՒՂԻ ՀՈԳՍԵՐԸ

Գյուղը չորս հարյուր ընտանիք ունի, բայց քաղաքներում ավելի շատ պառավաքարցիներ կան, քան Պառավաքարում: Տները նոր են՝ փռված ընդարձակ տարածության վրա: Նրանք, ովքեր պետք է լրացնեին այդ նոսրությունը, ստեղծեին կանոնավոր շարքերով մարդաշատ փողոցներ, տարիներ առաջ մեկնել են գյուղից: Եվ այժմ էլ, թեև լուծվել ու լուծվում են այդ հարցերը, սովորույթի ուժով արտահոսքը շարունակվում է: Մարդիկ մտահոգված են. ինչպե՞ս անել, որ սկսվի ետադարձ պրոցեսը, որ չդատարկվեն պապենական օջախները: Չէ՞ որ վերացել են արտահոսքի պատճառները, և ստեղծվել են քաղաքային կենցաղին ու կուլտուրային գրեթե լրիվ համապատասխան պայմաններ, գումարած դրան առողջարար օդը, գեղեցիկ, անտառապատ բնությունը, բարձր բերքատու հողերը, տնտեսապես ամուր սովխոզը և ավելի խոստումնալից հեռանկարները:

— Դպրոցի շրջանավարտների միայն քսան տոկոսն է մնում գյուղում,— ասում է դպրոցի դիրեկտոր Մուշեղ Ղարաբաղցյանը:— 1940—41 ուստարում գյուղի դպրոցն ուներ ութ անշուք դասասենյակ, պակասը լրացվում էր մասնավոր տներում վարձված սենյակներով, և այդ պայմաններում կար 500 աշակերտ: Այժմ երկհարկանի բոլոր հարմարություններ ունեցող դպրոցում կա 387 աշակերտ: Պատճառը համարում եմ աշխատատեղի պակասությունը: Ես ունեմ երկհարկանի տուն՝ վեց սենյակից, բայց երկու տղաներս Երևանում վարձով են ապրում: Փոքր տղաս այս տարի կավարտի պոլիտեխնիկական ինստիտուտը: Իմ ցանկությունն է, որ գոնե այդ մեկը գա, տեր կանգնի իմ տունուտեղին, բայց որտե՞ղ աշխատի: Ահա թե ինչու գտնում եմ, որ արտահոսքի պատճառը միայն սովորույթի ուժը չէ:

Տարիներ առաջ Այգեպարի գինու գործարանի արտադրամաս կառուցվեց Պառավաքարում, որը շատ օգտակար եղավ:

— Նախ, զգալի քանակությամբ մարդիկ տեղավորվեցին աշխատանքի,— ասում է արտադրամասի վարիչ Աշոտ Մելիքյանը,— ապա շրջապատի գյուղերն ազատվեցին հումք տեղափոխելու ավելորդ հոգսից: Միայն Պառավաքարի սովխոզը 1980 թվականին 4.000 տոննա խաղող է հանձնել արտադրամասին:

— Խաղողը տեղափոխելուց ազատվեցինք,— լրացնում է սովխոզի դիրեկտոր Ն. Միրզոյանը,— բայց ի՞նչ անենք միրգն ու պտուղը: ՀԿԿ XXVII համագումարում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կարևոր խնդիր համարեց պայքարը գյուղատնտեսական արտադրանքի բարձր որակի համար, բերքի կորուստների դեմ, փոխադրման և պահպանման ժամանակ մթերքների փչացման դեմ: Սա վերաբերում է նաև մեր տնտեսությանը: Հախումի ջրամբարի գործարկումից հետո մենք տարեկան կարտադրենք 3.500—4.000 տոննա պտուղ: Մի՞թե այդքանը հնարավոր կլինի տեղափոխել, բայց չէ՞ որ ընկնում է նաև որակը: Խիստ հասունացել է տեղում պտղի վերամշակման արտադրամասի կառուցման հարցը: Իսկ եթե բացվի նաև որևէ ձեռնարկության մասնաճյուղ, ապա մասամբ կլուծվի մեր կադրերը տեղում պահելու հարցը:

Երիտասարդության արտահոսքի շուրջ զրույցը շարունակեցինք ֆերմաներում, դաշտերում, սովխոզի գրասենյակում, տներում: Պարզվեց, որ կան նաև այլ պատճառներ: Դրանցից մեկը բնակարանի հարցն է: Տնտեսությունը լավ վճարում է իր անդամներին: Շարքային բանվորը ամիսը ստանում է 100—150 ռուբլի, տարեվերջին դրան գումարվում է ևս 1000—1500 ռուբլի, զգալի եկամուտներ են ստացվում նաև տնամերձ հողամասից, բայց ահա սովխոզը հարյուրավոր բանվորների կարիք ունի, իսկ երիտասարդությունը գնում բանվորություն է անում այլ վայրերում: Կամ տեղացի բարձրագույն կրթությամբ մասնագետները ցրված են հանրապետությունով մեկ, մինչդեռ սովխոզի ութ բրիգադավարներից ոչ մեկը չունի գյուղատնտեսական մասնագիտական կրթություն:

Գյուղի հոգսերը շատ են, որոնց լուծմանն են ուղղված կուսակցության ու կառավարության վերջին տարիներին ընդունված շատ որոշումներ: Եվ պառավաքարցիները, ղեկավարվելով այդ որոշումներով, քայլ առ քայլ լուծում են առաջացած խնդիրները, ապավինելով արդեն ամրապնդված տնտեսությանը, իրենց աշխատասիրությանը և ամենից շատ՝ հայրենի հողին, որն իրենց բոլոր բարիքների անսպառ աղբյուրն է:

ՄԱՎՐ ԴԱՆԻԵԼՅԱՆ

## Կոմունիստական շարժման բոցաշունչ մարտիկները

# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԱՆՎԵՀԵՐ ՋԱՀԱԿԻՐԸ

*Կոմունիստ լինել, նշանակում է լինել նոր մարդ, ավելի լավ, ավելի անձնազոհ, եռանդուն ու համարձակ, քան այն մարդը, որպիսին ի վիճակի եղավ ստեղծելու բուրժուական բարոյականությունը։*

Կլարա Ցետկին

**ԵՐԵԿՈ Է։ ՑՅՈՒՐԻԽԻ ԿՈՂՄԻՑ,** ջրին առաջն արած, կաթոլիկական կուսանոցի համար նվիրատվություն հավաքելով, Գերմանիայի սահմանին էր մոտենում ջահել մի կույս՝ զամբյուղը ձեռքին։ Սահմանապահներին մոտենալով, օրհնեց նրանց, համեստ, փոքրիկ ընծաներ տվեց ու շարունակեց ճանապարհը։

Կես-գիշեր էր, երբ սահմանն անցած կույսին դիմավորեցին գեղջուկի զգեստով գերմանացի երկու երիտասարդներ։ Ջրու բեռը գերմանական «Սոցիալ-դեմոկրատ» լրագրի համարներն էին, որ անլեգալ կերպով տպագրվում էին Ցյուրիխում։ Սնազգեստ կույսը «Կարմիր փոստատար» Յուլիուս Մոտելերի գործակալն էր՝ Կլարա Ցետկինը։ Այդ դեռ առաջին անգամն էր. հետագայում, տարբեր քաղաքներում կոնֆերանսի, կոնգրեսի, համագումարի գնալիս, երբ կառավարությունները հրաժարվում էին վիզա տալ, մերթ որպես դերասանուհի, մերթ որպես գուլպա գործող տատիկ, մերթ այլ կերպ ծպտված, կոնսպիրացիայի հմուտ վարպետը մեքենայով սլացել, անցել է հենց ոստիկանների քթի տակից։

Ծնվել է Կլարան 1857 թվականին, ջուլհակների ու բատրակների գյուղակում՝ Վիդերաուում, ուսուցչի ընտանիքում։ Հայրը՝ Գոտֆրիդ Էյսները առաջնորդվում էր Քրիստոսի՝ «Սիրիր մերձավորներիդ անձիդ պես» պատվիրանով։ Պաշտում էր Կլարան բարի, գյուղի ամենահաս խորհրդատու հորը, բայց հոգեպես ավելի մոտ էր մայրիկին՝ Ժորժ Սանդի վեպերով դաստիարակված ֆրանսուհի, 1849 թ. ֆրանսիական իրադարձությունների մասնակից Ժոզեֆինային՝ Ժան Դոմինիկ Վիտալիի աղջըկան, որն ուսումնասեր, ուժեղ կամքի տեր ու մարդասեր մի կին էր։ Արտակարգ աշխույժ, կենսախինդ երեխա էր Կլարան, հաստ, ոսկեգույն հյուսերով, մոխրագույն, շողարձակ աչքերով։ Երեխաները՝ Կլարան, Արթուրը և Գերտրուդը նախնական կրթությունն ստացան գյուղում, ապա, որպեսզի երեխաները շարունակեն ուսումը, ընտանիքը տեղափոխվեց Լայպցիգ։ Դժվարությամբ հաջողվեց Կլարային ընդունել տալ օրիորդաց ուսուցչական ինստիտուտ։ Կլարան հանույքով էր դասերի հաճախում, հատկապես դյութել էր նրան ինստիտուտի դիրեկտորը՝ Ավգուստա Շմիդը՝ կանանց իրավունքի պաշտպանության պայքարի անխոնջ մարտիկ, սքանչելի մանկավարժ, որ առինքնում էր շրջապատին իր խելքով, լավատեսությամբ ու հմայքով, ինքնուրույն գործելու ու խորհելու ունակությամբ։

Ամենից շատ Կլարան սիրում էր գրականությունը. այս ինստիտուտ չէր թափանցել պրուսական-գերմանական միապետության ուռահայրենասիրությունը, և ուսումնասիրում էին այստեղ նաև այլ ժողովուրդների գրականությունը, կուլտուրան։ Ռոմանտիկ խառնվածքի տեր աղջիկը շատ շուտ հրապուրվեց համաշխարհային գրականության դասականների ստեղծագործություններով։

1878 թ. աշնանը Կլարան գերազանց հանձնեց ավարտական քննությունները և ստացավ ուսուցչուհու կոչում։ Ուսուցչուհի, ապա որևէ ուսումնական հաստատության դիրեկտոր և ապահով կյանք, այսպես էին նախատեսել նրա ապագան Ժոզեֆինա և Գոտֆրիդ Էյսները։ Բայց քսանամյա աղջիկը որոշեց իր գիտելիքները ծառայեցնել՝ թեթևացնելու բանվորների ու գյուղացիների՝ երկրի իսկական տերերի, երկրի ապագան կերտողների կյանքը։

Փոքրուց նա տեսել էր գեղջուկի ծանր աշխատանքը, նրա չարքաշ վիճակը և անգութ կալվածատեր-ճորտատերերի ցոփ ու շվայտ կյանքը, զայրույթով լցվել վերջիններիս դեմ։ Շատ վաղ է նրան հուզել «Պե՞տք է որ լինեն հարուստներ ու աղքատներ» հարցը, և նա որոնել է իրեն մտահոգող այս և նման շատ այլ հարցերի պատասխանը։ Նրան հրապուրեցին սոցիալ-դեմոկրատական լրագրերը, գրականությունը... Գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության ժողով... Նա բախտ ունեցավ լսելու տաղանդավոր հռետոր Վիլհելմ Լիբկնեխտին։ Դառնալով խմբակի ակտիվ անդամներից մեկը՝ Կլարան համոզվում է, որ սոցիալ-դեմոկրատները պայքարում են կապիտալիստական կարգերը խորտակելու համար։ Կարճ ժամանակ անց նա դարձավ «Մավրերի ակումբի» (այդպես էին անվանում սոցիալ-դեմոկրատներն իրենց խմբակը Ցյուրիխում) սիրված անդամներից մեկը։ Նա գրավեց ռուս ուսանողների խմբակի ակտիվ անդամ 30-ամյա Օսիպ Ցետկինի՝ աշխատավորության ազատագրման գործին զինվորագրված ուկրաինացի երիտասարդի ուշադրությունը։ Հարազատ Ուկրաինան ջերմորեն սիրող Ցետկինը, ոստիկանության հալածանքներից ազատվելու համար, թողել էր հայրենի լայնարձակ տափաստաններն ու դաշտերը, դարձել տարագիր։ Լայպցիգի համալսարանի ուսանող և հյուսնի արհեստանոցի բանվոր էր Օսիպը, երբ ծանոթացավ Կլարայի հետ։ Մեծ եղավ նրա ազդեցությունը օրիորդ Էյսների գաղափարական հայացքների կերպավորման, նրա հասարակական-քաղաքական գործիչ դառնալու խնդրում։

Տնային ուսուցչուհի Կլարան ամեն անգամ Լայպցիգ գալով հանդիպում էր Օսիպին։ Նրանց փոխադարձ համակրանքը փոխվեց խոր սիրո։ Հեղափոխական գործունեություն, հալածանքներ, և Կլարան ստիպված էր հեռանալ Գերմանիայից։ Ընկերուհին՝ Վարվառան, հրավիրում է նրան Պետերբուրգ, իր ծնողների մոտ. Օսիպի հետ խորհրդակցելով՝ մեկնում է Պետերբուրգ. Կլարան միշտ հիշել է այդ հաճելի ժամանակը, Ռուսաստանը...

Երկու տարի անց կուսակցական շատ գործիչների հետ բանտարկվեց և Օսիպը։ Նրան արտաքսեցին Գերմանիայից։ Հրաժեշտի ժամանակ Օսիպը Կլարային խոստովանեց իր սերը։

— Որտեղ դու, այնտեղ էլ ես,— պատասխանեց Կլարան և երկու տարի անց՝ 1882 թ., մեկնեց Փարիզ։

Դժվար էր նորապսակ զույգի համար Փարիզում ապրել միայն Օսիպի կատարած թարգմանություններով. Կլարան ևս զբաղվում էր թարգմանությամբ և ուսուցչություն էր անում։ Քաղաքական համոզմունքներից հրաժարվելու գնով շնորհաշատ ջահելները կարող էին իրենց համար բարեկեցիկ կյանք ապահովել, բայց դա բացառված էր. զրկանքներով լի կյանքը նրանք ջերմացնում էին իրենց անհատնում սիրով։ Մաքսիմ և Կոնստանտին կոչեցին նրանք իրենց զավակներին և ամեն ինչ անում էին, որ նրանք մեծանան իբրև առողջ, կոփված, լավ դաստիարակված մարդիկ։

Դժվար էր հոգալ չորս հոգուց բաղկացած ընտանիքի ապրուստը, և Կլարան սկսում է լվացք անել տներում։ Ու մի օր էլ ոստիկանությունը դուրս է անում նրանց փոքրիկ բնակարանից։ Նորը գտնել շատ էր դժվար։ Պատահաբար նրանց հանդիպեց Սիբիրից Փարիզ եկած ռուս մի կին հեղափոխական և առաջարկեց նրանց իր սենյակը. ինքը գնաց ընկերների մոտ։

Կլարայի կյանքում վճռական դեր խաղաց սոցիալ-դեմոկրատների առաջնորդի՝ Ավգուստ Բեբելի Կինը և սոցիալիզմը գիրքը, և նա երազում էր ծանոթանալ հեղինակի հետ, ստանալ նրանից իրեն հուզող հարցերի պատասխանը։ Նրա մտքով իսկ չէր անցնում, որ հետագայում իրենք դառնալու են ո՛չ միայն մարտական զինակիցներ, այլև մտերիմ բարեկամներ։

— Այս գիրքը շատ ուժեղ ազդեցություն է գործել ինձ վրա,— խոստովանել է Կլարան,— այն ահեղ մի մեղադրանք է կապիտալիստական հասարակության հանդեպ և տոգորված է սոցիալիզմի ոգով. այնտեղ զգացվում է ո՛չ միայն համարձակ, քաջակորով մարդը, այլև հեղափոխական դասակարգի բարոյական ուժը, պատմության փոթորիկներում ծնվող նոր աշխարհի բարոյական ուժը։

Կլարա Ցետկինի Փարիզում գտնվելու տարիները համընկան ֆրանսիական շարժման զգալի վերելքի հետ։ Տուն էին վերադարձել ողջ մնացած կոմունարները, ստեղծվում էին բանվորական կազմակերպություններ։ Մարքսի փեսան՝ Պոլ Լաֆարգը և նրա ընկերները ձեռնարկեցին մարքսիստական կուսակցության կազմակերպումը։ Ցետկինները ակտիվ մասնակցում էին Պեր-Լաշեզի գերեզմանատանը գումարվող հավաքույթներին։

«Մեզ անչափ դուր եկավ այդ շատ սիրելի, փոքրիկ գերմանուհին»,— գրել է Լաուրա Լաֆարգը Ֆ. Էնգելսին։ Գաղափարական համախոհները դարձան մտերիմներ, միասին պրոպագանդիստական աշխատանք էին ծավալում բանվորների շրջանում, ներգրավում կանանց քաղաքական պայքարի ոլորտը։

Սովորել, ավելի խոր ըմբռնել կապիտալիստական հասարակարգի հակասությունները, այն պայքարի արդյունքները, որի նվիրյալ զինվորն էր դարձել ինքը։ Անքուն գիշերներ էր լուսացնում նա ուսումնասիրելով Մարքսի, Էնգելսի աշխատությունները։ Կլարան դառնում է մարքսիստական գաղափարների հավատարիմ նվիրակը, գաղափարներ, որոնց որդեգրվելով, նա փաստորեն հանդիսանում է համաշխարհային պատմության մեծագույն կանանցից մեկը՝ մարքսիստ մտածող և մարքսիզմը ստեղծագործաբար կիրառող։

Ֆրանսուհիների հեղափոխական պայքարն ուժգին ազդեց նրա վրա, ավելի վճռական դարձրեց նրան և մեծ դեր խաղաց կանանց՝

շունչ պահած հետևում եմ Ռուսաստանից եկող լուրերին: Այդտեղ լուծվում են մարդկության մեծ խնդիրները, արժե այդտեղ ապրել: Թող դուք՝ կոմունիստներդ, լինեք նույնքան հաղթական, որքան քաջ ու անձնազոհ եք, թող բոլոր երկրների պրոլետարները արժանի լինեն Ռուսաստանի պրոլետարներին»: Կոմունիստական ինտերնացիոնալիզմի անխոնջ մարտիկը բուռն պայքար էր ծավալել սովետական իշխանության դեմ պայքարող, ամենատարբեր հերյուրանքներով զրպարտող անկախ սոցիալ-դեմոկրատական կուսակցության, Կաուցկու դեմ: Վլադիմիր Իլյիչը բարձր էր գնահատում գերմանական հեղափոխականների օգնությունը Սովետական Ռուսաստանի համար ծանրագույն ժամանակներում: «Մեզ ամենից ավելի ուրախացնում է,— գրում էր նա խորապես հարգելի Կլարային,— որ դուք, ընկեր Մերինգը և Գերմանիայի սպարտակյան այլ ընկերներ գլխով ու սրտով մեզ հետ եք... Այդ վստահություն է հաղորդում մեզ, որ արևմտաեվրոպական բանվոր դասակարգի լավագույն տարրերը, չնայած բոլոր դժվարություններին, կգան մեզ օգնության»:

1918 թվականին Գերմանիայում հաղթանակած նոյեմբերյան հեղափոխությունը հարկադրում է հաշտություն կնքել ռազմաճակատներում: Գերմանական կայսրը փախչում է Հոլանդիա: Ընտրվում են բանվորական ու զինվորական սովետներ: «Ամբողջ իշխանությունը սովետներին». կոչ է արձակում «Սպարտակը»:

Քուն ու դադար չուներ Կլարան. «Շաբաթ օրը զինվորների հետ հեղափոխություն արեցի,— գրում է նա իր ամենամերձավոր ընկերուհուն՝ Ռոզային,— երկուշաբթի օրը եղա Ուլմայում՝ ռազմագերիների ճամբարում, որպեսզի այս խեղճերին որևէ բան բացատրեմ ու նրանց հանգստացնեմ... Հինգ ճառ արտասանեցի... ֆրանսիացիների, ռումինացիների, սերբերի, ռուսների, ինչպես և գերմանական պահակախմբերի առաջ: ...Նույն օրը երկու կարճառոտ ելույթ ևս ունեցա... Տուն եկա մեռելի պես հոգնած ու խռպոտած»:

1919 թ. մարտին պետք է կայանար Գերմանիայի կոմունիստական կուսակցության հիմնադիր համագումարը Բեռլինում: Եվ Կլարան, անտես առնելով բժիշկների ու մերձավորների կանխազգուշացումները, պատրաստվում էր Բեռլին մեկնելու: Գերմանիայով մեկ ծավալվում էին հեղափոխական բուռն շարժումները: Սակայն հունվարի 8-ին հակահեղափոխական գերակշիռ ուժերը հարձակվեցին Բեռլինի վրա, 6 օր անց լրիվ գրավեցին քաղաքը. մոլեգնում էր սպիտակ տեռորը, սպանվում, տանջամահ էին արվում շատ բանվորներ: Արյան մեջ խեղդվեց նորաստեղծ հանրապետությունը:

Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի անձնազոհ հերոսության շնորհիվ այդ արյունահեղ օրերին իսկ լույս էր տեսնում «Ռոտե ֆանե»: Հունվարի 15-ին հրապարակվեց Կարլ Լիբկնեխտի «Ի հեճուկս ամե՛ն ինչի» բոցավառ հոդվածը՝ ուղղված գերմանական բանվոր դասակարգին. «Այո՛, այդպես է, Բեռլինի հեղափոխական բանվորները պարտություն կրեցին: Հարյուրավոր լավագույնները նրանցից գնդակահարված են, շատ շատերը բանտերն են նետված:

Այսօրվա պարտվողները վաղը հաղթողներ կդառնան... Գերմանական բանվոր դասակարգը դեռ մինչև վերջ չի անցել իր գողգոթան...

Իսկ կապրենք մենք, թե ոչ, երբ կհաջողվի հասնել նպատակին, միևնույն է, կապրի մեր ծրագիրը: Այն կտիրի ազատագրված մարդկության աշխարհում: Ի հեճուկս ամե՛ն ինչի»:

Այս հոդվածը հրապարակվեց այն օրվա առավոտյան, երբ հակահեղափոխական զորքերի կողմից բռնվեցին ու գազանաբար սպանվեցին Կարլ Լիբկնեխտը և Ռոզա Լյուքսեմբուրգը: «Սպանված են փախուստի փորձ անելիս». գրվեց հաղորդագրությունում:

Կլարա Ցետկինը գրեց Ռոզա Լյուքսեմբուրգի քարտուղարին.

«Ռոզան արժանի է գրանիտից ավելի ամուր հուշարձանի: Ես կգործադրեմ իմ բոլոր ուժերը, որպեսզի սոցիալիստական գրականության և պրոլետարիատի պատմության մեջ բարձրացվի Ռոզային ու Կարլին արժանի հուշարձան»:

Վիշտը, ցավը ատամի տակ սեղմած, այդպես էլ վարվեց բանվորների՝ հեղափոխական մարտերում ճերմակած առաջնորդը: Ամենուր նա հանդես էր գալիս նրանց նվիրված զեկուցումներով, ելույթներով, հոդվածներով ու բրոշյուրներով:

Եվ նա կրկին լծվեց գերմանական նորաստեղծ կոմունիստական կուսակցության ամրապնդման գործին: Սկսեց լույս տեսնել կանանց «Կոմունիստին» լրագիրը, ուր պարբերաբար հրապարակվում էին Նադեժդա Կրուպսկայայի, Ալեքսանդրա Կոլոնտայի, Ինեսա Արմանդի հոդվածները:

1920 թ. վերջին ԳԿԿ-ն միավորվեց անկախ սոցիալ-դեմոկրատական կուսակցության ձախ թևին. հեղափոխական պայքարի ասպարեզ ելան այնպիսի բանվոր առաջնորդներ, ինչպես Էռնեստ Թելմանը, Վիլհելմ Ֆլորինը, Վալտեր Շտյոկերը, Վիլհելմ Քյոնենը, Ֆրանկ Դալեմը: Այդ միավորման գործում կան նաև Կլարա Ցետկինի անդուլ ջանքերը:

1920 թվականի հունիսին ցրվեց գերմանական ազգային ժողովը, նշանակվեցին գերմանական ռայխստագի ընտրությունները: Գերմանական կոմունիստական կուսակցությունն



ստացավ դեպուտատական երկու մանդատ: Ռայխստագի կազմի մեջ մտան Կլարա Ցետկինը և ԳԿԿ-ի այդ ժամանակվա նախագահ Պաուլ Լևին:

Ռայխստագի նիստը բացված է: Սառը, նաև ատելավառ հայացքների ուղեկցությամբ ամբիոնին է մոտենում Կլարա Ցետկինը: Հնչում է աշխարհի բոլոր պրոլետարներին ուղղված նրա համերաշխության կոչը:

— Մենք խոնարհվում ենք Սովետական Ռուսաստանի առաջ, որն անասելի ծանր պայմաններում, պայքարելով ողջ կապիտալիստական աշխարհի դեմ, կառուցում է նոր, սոցիալիստական Ռուսաստանը:

Ապա, քննադատելով Վիլսոնի և Ազգերի լիգայի ծրագրերը, նշեց, որ Գերմանիայի մեկուսացման վերացման միակ միջոցը դաշինքն Սովետական Ռուսաստանի հետ:

— Կարճատեսության ու անմտության գագաթնակետն է «գրահապատ բռունցքի քաղաքականությունը» սովետական նորաստեղծ պետության նկատմամբ: Ռեակցիոն կառավարությունները Լեհաստանում են կենտրոնացնում Ռուսաստանից վտարված ինտերվենտների բանակները: Գերմանական կոմունիստներս ամեն ինչ պիտի անենք, որ Գերմանիայի սահմանով չանցնի Լեհաստանի համար նախատեսված սպառազենքով, հանդերձանքով, ռազմամթերքով բեռնված ոչ մի գնացք, սպառազեն պատրաստող ոչ մի հաստոց:

«Ձեռքներդ հեռո՛ւ Սովետական Ռուսաստանից». այս էր նրա գործունեության նշանաբանն այդ շրջանում:

Իսկ երբ քսաներկու օր անց Կլարա Ցետկինը նույն ամբիոնից ամոթանքի սյունին գամեց գերմանական միլիտարիստներին Հյուսիսային Ֆրանսիայում և Բելգիայում գործած գազանությունների համար, դահլիճից լսվեց.

— Արտասահմանում շնորհակա՛լ կլինեն ձեզնից:

— Հարգելի պարոնա՛յք,— ի պատասխան հնչեց Կլարայի ձայնը,— ես կարծում եմ, Գերմանիան շնորհակալ կլինի ինձնից այն բանի համար, որ ես ճշմարտությունն եմ ասում:

Շատ շատերի համար մարդկայնության, հեղափոխականի անձնական օրինակ է ծառայել Կլարան, մեծ դեր է խաղացել նրանց կյանքում:

Մի անգամ նրան հարցրի,— հիշում է Մյունխենի սովետական հանրապետության ղեկավար գործիչներից մեկը.

— Կարո՞ղ են հեղափոխական կանայք երեխա ունենալ:

Այս հարցը հետաքրքրում էր շատ կոմունիստ կանանց:

— Անպայման,— պատասխանեց նա,— այդ ո՛չ միայն նրանց իրավունքն է, այլև պարտականությունը:— Ու դարձյալ հիշեց իր ամենասիրելի մարդուն.— գիտե՞ս ինչպե՞ս էր ափսոսում Ռոզան, որ չկարողացավ երեխա ունենալ: Բայց մի հանգամանք վճռական է, անպայման պետք է դաստիարակես նրանց, աճեցնես իբրև ինքնուրույն մարդիկ:

Իսկ սիրո, ընտանեկան երջանկության, մայրության մասին վարակող ոգևորությամբ խոսելիս նա հաճախ էր հիշում Իլյիչի խոսքերը.

— Կոմունիզմը պետք է բերի իր հետ ոչ թե ասկետիզմ, այլ կենսախնդություն ու առողջություն, որը պետք է բխի նաև լիարյուն սիրային կյանքից:

Իտալացի կոմունիստ Կամիլա Ռավելի հետ 1920 թ. Կլարա Ցետկինը գալիս է Ռուսաստան:

Այս այցելության ժամանակ Կլարայի համար կարևորագույն իրադարձությունը նոր հանդիպումն էր Իլյիչի հետ:

Ռուսաստանից հեռանալով, Կլարան գրում է.

«Թանկագին, թանկագին, մեծարգո բարեկամ Լենին, պահպանեք ձեզ մեզ համար, հեղափոխության համար: Ուրախությունը Վրանգելի բանակների ջախջախման առիթով կզորացնի Ձեզ, իսկ այդ նշանակում է կզորացնի Սովետական Ռուսաստանին: Դուք և Սովետական Ռուսաստանը մի ամբողջություն եք...

...Ես հղում եմ Ձեզ, Ձեր սիրելի կնոջն ու քրոջը ամենասրտաբուխ ողջույններս և գրկում եմ Ձեզ հավատարիմ բարեկամության ու մարտական համագործակցության զգացումով:

Ձեր Կլարա Ցետկին»:

Զիլենբուխում նա ստացավ Վիլհելմ Պիկի նամակը. վիթխարի գործերից հետո առջևում նոր, ավելի պատասխանատու, կարևոր անելիքներ կան. «...Թանկագին Կլարա՛, մենք ակնկալում ենք Ձեզնից այնպիսի՛ մեծ աշխատանք և օգնություն: Մենք երբեք չենք ների ձեզ, եթե այժմ... չանենք ամեն բան պահպանելու Ձեր աշխատունակությունը»:

Կլարան մեկնեց Ժելեզնավոդսկ՝ բուժման:

Իլյիչի մահը խորապես ցնցեց Ցետկինին: Ամբողջ աշխարհի միլիոնավոր աշխատավորներ սգում էին անդառնալի կորուստը: Թաղման ողջ արարողության ժամանակ և հետո, Սովետների սգո նիստում, նա անբաժան էր Նադեժդա Կոնստանտինովնայից: Մինչև կյանքի վերջն էլ Կլարան մնաց Կրուպսկայայի և Մարիա Իլյինիչնայի սրտամոտ, մերձավոր բարեկամը:

Օգոստոս, 1932 թվական: Մեծ, սև լիմուզինն անցավ Օդեր գետի կամուրջն ու սլացավ Բեռլին տանող ճանապարհով: Մեքենայի խորքում, բարձին հենված, նստած է ալեհեր, հիվանդ Կլարան: Սովետական Միությունից նա նոր էր վերադառնում Գերմանիա, ուր իշխում էին գրկանքն ու տառապանքը: Վեյմարյան հանրապետությունում բնակչության մոտ մեկ եր-

րորդը գործազուրկ էր: Կառավարող ֆաշիստական խոշոր բուրժուազիայի ներկայացուցիչները զբաղված են ռազմական պատրաստություններով: Մասսայական հավաքներում Հիտլերը ձգտում է դեմագոգիկ ելույթներով իր կողմը գրավել մասսաներին:

Կլարան եկել էր գերմանական ժողովրդին պայքարի հանելու ֆաշիստական սպառնալիքի դեմ:

Ռեակցիոն մամուլը՝ զայրույթով լի, պահանջում էր հատուկ օրենքով արգելել Կլարայի ելույթը ռայխստագում:

Օգոստոսի 30-ը ռայխստագի նիստի բացման օրն էր: Ռայխստագի կոմունիստական ֆրակցիայի անդամների առաջին շարքում է Կլարան: Բոլորը տագնապով մտածում են. նա՞ կբացի ռայխստագի նիստը, ճառ կարտասանի՞... Երկու կոմունիստների թևին հենված, Կլարա Ցետկինը մոտենում է նախագահի բազկաթոռին, նստում, բայց և անմիջապես կանգնում է՝ հայտարարելու նիստի բացումը: Հիտլերականները պապանձվել-մնացել են, դահլիճում քար լռություն է:

Համաձայն ընդունված օրենքի, նա դիմում է դահլիճին՝ չկա՞ արդյոք դահլիճում իրենից տարիքով մեծ մեկը: Ամենատարեցն ինքն է, և ռայխստագի նիստը հայտարարում է բացված: Սկզբում դանդաղ, ցածրաձայն, նրա ձայնը հետզհետե դառնում է հաստատուն ու բարձր, ինքը՝ ավելի վճռական:

— Հիտլերը՝ դա պատերազմ է, նրա իշխանության գլուխ անցնելը լուրջ վտանգ է սպառնում բոլոր աշխատավորների հայրենիքին՝ Սովետական Միությանը:

Եվ նա երդվում է՝ մինչև կյանքի վերջը պայքարել այդ օրհասական սպառնալիքի դեմ:

1932 թ. օգոստոսին ռայխստագում արտասանած Կլարա Ցետկինի ելույթը գերմանական ֆաշիզմի դեմ մղած նրա պայքարի գագաթնակետն էր: 1932 թ. մայիսին Հանրի Բարբյուսը, Ռոմեն Ռոլանը, Ալբերտ Էյնշտեյնը, Մաքսիմ Գորկին, Հենրիխ Մանը և համաշխարհային կուլտուրայի շատ այլ գործիչներ հանդես եկան իմպերիալիստական պատերազմի դեմ կոնգրես հրավիրելու առաջարկով: Կլարա Ցետկինը ևս ընտրվեց այդ կոնգրեսի նախապատրաստման նպատակով կազմակերպված կանանց միջազգային կոմիտեի անդամ: Իմպերիալիզմի և պատերազմների դեմ պայքարող հին մարտիկը կոնգրեսից մի քանի շաբաթ առաջ պարգևատրվեց Լենինի շքանշանով և Հենրիխ Մանի, Ալբերտ Էյնշտեյնի ու գերմանական այլ գործիչների հետ մեկտեղ ընտրվեց իմպերիալիստական պատերազմի դեմ մղվող պայքարի միջազգային կոմիտեի անդամ:

Վիճակը երկրում հետզհետե ավելի վտանգավոր էր դառնում: Գեներալ-ֆելդմարշալ ֆոն Հինդենբուրգը մոնոպոլիստական կապիտալի մագնատների ստիպմամբ Հիտլերին նշանակեց ռայխսկանցլեր:

Կլարան ծանր հիվանդ էր, երբ նրան հասավ այդ, ինչպես և ռայխստագը պրովոկացիոն նպատակներով հրդեհելու, ԳԿԿ-ի ղեկավար Էռնեստ Թելմանի ձերբակալության լուրը:

1933 թ. «Մետրոպոլ» հյուրանոցում, անկողնուն գամված, նա գրեց իր վերջին հոդվածը կանանց միջազգային օրվա առթիվ:

— Վերցրեք, օգտագործեք, ինչպես հարմար կգտնեք, այդ... իմ կտակն է:

Հոդվածը լույս տեսավ բրոշյուրի ձևով՝ Լենինի պատգամները աշխարհի բոլոր կանանց վերնագրով: Իսկ մտքով նա միշտ Գերմանիայի հետ էր, նրա կոմունիստական կուսակցության հետ... Խիստ անհանգստանում էր, որ Թելմանի բանտարկությունը կխախտի Կենտկոմի միասնությունը: Եվ, որպես ՄՕՊՐ-ի ղեկավար, վերջին անգամ նա դիմեց աշխարհի հասարակայնությանը «Մեզնից ոչ ոք չպետք է հանգստանա, մինչև չջախջախվի ֆաշիզմը»:

Կլարա Ցետկինը վախճանվեց 1933 թ. հունիսի 20-ին: Միությունների տանը դրված նրա աճյունին հրաժեշտ տալու էին եկել բազմահազար աշխատավորներ: 600 հազար հուղարկավոր էին ուղեկցում թափորը: Նրա աճյունը դրվեց Կրեմլի պատի մեջ:

...Կլարա Ցետկինի սիրած հայրենիքում ֆաշիստական հրոսակների ջախջախումից հետո արևելյան հատվածում ստեղծվեց բանվորների ու գյուղացիների առաջին գերմանական սոցիալիստական պետությունը՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, սոցիալիստական համագործակցության երկրների համահավասար անդամը:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ



# ԼՈՒՅՍԸ ԵՎ ԲՈՒՅՍԻ ԿՅԱՆՔԸ

**Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, կենսաբանական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար

**ԵՐԿՐԻ ՎՐԱ ԿՅԱՆՔԻ** գոյությունն ամենից առաջ պայմանավորված է լույսով, բնության այդ կախարդական և շռայլ պարգևով, որ թափանցելով տիեզերական տարածություններից՝ ջերմություն և կյանք է հաղորդում ո՛չ միայն բուսական ու կենդանական աշխարհին, այլև անկենդան իրերին, ջրային անապատ զանգվածներին, մթնոլորտային օդին: Սակայն երկրի վրա հսկայական օրգանական էակների և անկենդան աշխարհի կառուցվածքային բազմազանության մեջ միակ օրգանիզմները, որ առանց լույսի չեն կարող աճել, զարգանալ ու բազմանալ, կանաչ բույսերն են: Ցուցաբերելով զարմանալի ունակություն՝ դրանք էներգիայով հարուստ լույսի ճառագայթները օգտագործում են բնության հզորագույն արդյունավետությամբ օժտված պրոցեսի՝ ֆոտոսինթեզի դրսևորումով: Ֆոտոսինթեզը՝ արևի էներգիայի օգնությամբ ջրի և ածխաթթու գազի քիմիական միացմամբ օրգանական տարբեր որակի էներգիայով հարուստ նյութերի սինթեզը, ապահովում է ոչ միայն կանաչ բույսերի կյանքը, այլև ողջ կենդանական ու միկրոբային հույժ բազմազան աշխարհի գոյությունը:

Չնայած ժամանակակից հասարակության արտադրաուժերի աննախընթաց վերելքին ու բարձր մակարդակին, այնուամենայնիվ, նրանց կարողությունները անհամեմատելի են ֆոտոսինթետիկ պրոցեսի հզորության հետ: Բավական է միայն նշել, որ ամեն տարի բուսական օրգանիզմները, սկսած միաբջիջ ծովային ջրիմուռներից, վերջացրած բարձրակարգ ցամաքային բույսերով, կենսոլորտը հարստացնում են 375 միլիարդ տոննա օրգանական բազմազան նյութերով, միաժամանակ այդ պրոցեսում արտադրելով 400 միլիարդ տոննա թթվածին: Թերևս զարմանալին այն է, որ սինթեզվող օրգանական նյութերի ամենամեծ տոկոսը բաժին է ընկնում ջրային բույսերին, այն էլ առավելապես պլանկտոնային միաբջիջ ջրիմուռներին: Դրանք օժտված են բազմազան մեծ ակտիվությամբ և օվկիանոսներում, ծովերում, գետերում, ջրամբարներում մեծ ինտենսիվությամբ կուտակում են օրգանական նյութեր: Երկրի ջրային զանգվածներում կենդանական աշխարհի բազմազանությունն ու առատությունը առաջին հերթին պայմանավորված են պլանկտոնային կանաչ ջրիմուռների կենսագործունեությամբ:

Ուշագրավ է այն փաստը, որ օվկիանոսների ու ծովերի օրգանական աշխարհի համեմատությամբ երկրի մայր ցամաքների կենսազանգվածը 200 անգամ ավելի է: Ընդ որում, ցամաքային կենսազանգվածի 98—99 տոկոսը կազմում են բույսերը, իսկ 1—2-ը՝ կենդանիները: Դրա հակառակ, օվկիանոսային կենդանիների ընդհանուր զանգվածը 30 և ավելի անգամ գերազանցում է բուսականին: Բանն այն է, որ ջրային միջավայրում ինտենսիվ աճող ու բազմացող բույսերը, որոնք ավելի նուրբ սննդանյութեր են կենդանիների համար, նույնքան ինտենսիվությամբ օգտագործվում են վերջիններիս կողմից, մինչդեռ ցամաքային բուսածածկի մեծ մասը կազմում են անտառային տեսակները, որոնց փոքր մասն է որպես սնունդ օգտագործվում կենդանիների և մարդու կողմից:

Բույսերի կյանքում լույսի նշանակությունը չի սահմանափակվում միայն ֆոտոսինթեզով: Դրա ազդեցությամբ կանոնավորվում է նաև բույսերի նյութափոխանակությունը: Ընդ որում, լույսի այդ դերի իրականացումը կապված է պիգմենտների կամ, այսպես կոչված, բջիջների ֆոտոկարգավորիչների հետ, որոնք ունակ են կլանելու լույսի որոշակի երկարություն ունեցող ալիքային ճառագայթները:

Բուսական օրգանիզմներում պիգմենտներից ամենատարածվածը ա, բ և դ քլորոֆիլներն են: Առաջին երկուսը գտնվում են կանաչ բույսերի մեջ, իսկ վերջինը՝ կարմիր ջրիմուռներում: Ֆոտոսինթեզի ինտենսիվությունը և ծավալը որոշվում են հիմնականում այս պիգմենտների քանակով ու ակտիվությամբ: Նըշ-

ված պիգմենտները տարբերվում են ո՛չ միայն իրենց քիմիական կառուցվածքով, այլև տարբեր ճառագայթների հանդեպ ունեցած ռեակցիայով: Կանաչ պիգմենտները, որպես կանոն, ավելի մեծ ագահությամբ կլանում են կարմիր և կապույտ ճառագայթները, որոնք համեմատաբար շատ էներգիա են պարունակում, և դրա համապատասխան էլ բույսերի տերևներում ավելի շատ օրգանական նյութեր են սինթեզվում: Դեռ ժամանակին ռուս մեծ գիտնական Կ. Ա. Տիմիրյազևն ապացուցել է, որ օրգանական նյութերի սինթեզի ակտիվությունն ուղիղ համեմատական է տերևների պիգմենտների կողմից լույսի էներգիայի կլանմանը: Այս առումով ամենից պասիվ են կանաչ ճառագայթները, որոնք և նվազ մասնակցություն են ունենում ֆոտոսինթեզի պրոցեսներին:

Բուսական օրգանիզմում իրականացվող բազմաթիվ կարևորագույն պրոցեսներից մեկը, որով ապահովվում է դրանց կենսագործունեությունը, քլորոֆիլի անընդհատ սինթեզն ու քայքայումն է: Քլորոֆիլի սինթեզն սկսվում է նրա պիգմենտների նախնական ձևերի՝ պորֆիրինների և պրոտոքլորոֆիլի առաջացումով: Վերջիններիս քանակը բուսական բջիջներում, որպես կանոն, 2—4 կարգով ցածր է, քան քլորոֆիլինը և, չնայած դրան, քլորոֆիլի պարունակությունը բույսերի տերևներում և այլ հյուսվածքներում շարունակում է մնալ այնպիսի մակարդակի վրա, որն ապահովում է օրգանական նյութերի ակտիվ սինթեզը:

Քլորոֆիլի առաջացումը կապված է լույսի ազդեցության հետ, որի ժամանակ պրոտոքլորոֆիլը վեր է ածվում քլորոֆիլի և այդ ռեակցիան իրականացվում է քլորոֆիլազա ֆերմենտով, որը, օգտագործելով լույսի քվանտները, սկզբում գոյավորում է քլորոֆիլ ա, ապա քլորոֆիլ բ:

Քլորոֆիլի սինթեզի ակտիվությունը պայմանավորված է ինչպես լույսի ինտենսիվությամբ, նույնպես և դրա որակով: Ուշագրավ է, որ այդ պրոցեսի համար սկզբում բավարար է համեմատաբար ցածր ինտենսիվության լույսը, որն այնուհետև նախապայմաններ է ստեղծում քլորոֆիլի սինթեզի ուժեղացման և դրան զուգահեռ էլ մեծանում է բույսերի պահանջը լույսի ինտենսիվության նկատմամբ: Հետաքրքրական է նաև այն փաստը, որ երբ բույսն ստանում է ընդհատվող լույս, քլորոֆիլի սինթեզը շարունակվում է նույն մակարդակով, ինչպես անընդհատ լույսի պայմաններում: Դա նշանակում է, որ այդ ռեակցիան ընթանում է երկու փուլով, որոնցից մեկի ժամանակ լույսի առկայությունը պարտադիր չէ:

Քլորոֆիլի սինթեզի ինտենսիվությունը, ինչպես ասվեց, պայմանավորված է նաև նրա վրա ընկնող ճառագայթների որակով: Այն ճառագայթները, որոնք ամենից շատ են կլանվում քլորոֆիլի նախորդների (պորֆիրինների և պրոտոքլորոֆիլի) կողմից (կարմիր և կապույտ ճառագայթները), դրանք մեծապես նպաստում են ֆոտոսինթեզին:

Քլորոֆիլի սինթեզին զուգահեռ տեղի է ունենում նաև նրա մոլեկուլների քայքայում, որն ավելի քիչ է պայմանավորված լույսով: Քլորոֆիլի մոլեկուլների քայքայման և վերականգնման ակտիվությունը նույնը չէ տարբեր բույսերի մոտ և միևնույն բույսի զարգացման առանձին փուլերում, ինչպես նաև տարբեր լույսի ինտենսիվության ու որակի ճառագայթների պայմաններում: Այս ուղղությամբ կատարված հետազոտությունները ցույց են տվել, որ միշտ արագ վերականգնվող քլորոֆիլային մոլեկուլներն ավելի ակտիվ են մասնակցում ֆոտոսինթեզի պրոցեսին և որ նման վիճակ նկատվում է մեծ էներգիա պարունակող ճառագայթների ազդեցության դեպքում:

Լույսի դերը կարևոր է նաև բուսական ֆերմենտների՝ քիմիական ռեակցիաների կատալիզատորների ակտիվացման և դրանց գործունեության կարգավորման պրոցեսներում: Բույսերի մեջ գործող մի շարք ֆերմենտներ պարունակում են այսպես կոչված քրոմոֆորային (պիգմենտ պարունակող) խմբեր, ինչպես, օքսիդազային և դեհիդրոգենազային ֆերմենտները: Տվյալ ֆերմենտների պիգմենտային խմբերի կլանած լույսի որակի համապատասխան որոշվում է նույն այդ լույսի ֆոտոկանոնավորիչ դերը ֆերմենտի ակտիվացման պրոցեսում: Ընդ որում, ենթադրվում է, որ բույսերի մեջ գոյություն ունի ֆոտոկարգավորիչ սիստեմ, որին մասնակցում են երկու տարբեր պիգմենտներ. դրանցից մեկն ակտիվանում է կարմիր ճառագայթներից, մյուսը՝ կապույտ:

Վերջին երկու տասնամյակում զգալի փորձարարական տվյալներ են կուտակվել, որոնք ցույց են տալիս լույսի ակտիվ մասնակցությունը ներբջջային կառուցվածքների մեմբրանների կենսագործունեությանը: Մեմբրանները, ինչպես հայտնի է, մոլեկուլային չափերի հասնող նուրբ թաղանթներ են, որոնք սահմանազատում են բջիջները և ներբջջային կառուցվածքները իրարից ու նպաստում տարբեր իոնների, շաքարների, ամինաթթուների և նյութափոխանակության այլ պրոդուկտների տեղափոխմանը: Մեմբրաններն ապահովում են բջիջների և ներբջջային կառուցվածքների մորֆոլոգիական ամբողջականությունը, դրանց կայունությունն ու առանձգականությունը: Դրանք պարունակում են տարբեր ֆերմենտներ, որով և նպաստում են ո՛չ միայն բջիջների նյութափոխանակությանը, այլև մեծ էներգիա պարունակող նյութերի սինթեզին: Մեմբրանների կենսաբանական առանձնահատկություններից



մեկն էլ պայմանավորված է բջջապլազմայի և միջավայրի միջև կալիումի, նատրիումի, քլորի և այլ իոնների անհավասար տեղաբաշխմամբ: Դրա շնորհիվ բջիջների և դրանց միջավայրի միջև առաջանում է բիոպոտենցիալների տարբերություն, որը նույնպես կարևոր դեր է խաղում բջիջների և ամբողջական բույսի կենսագործունեության մեջ:

Լույսի դերն առաջին հերթին նշանակալից է ֆոտոկոնֆորմացիոն մեմբրանների (այն մեմբրանների, որոնք պարունակում են լուսակլանիչ քրոմոտոֆորներ) գործունեության կանոնավորման գործում: Լույսի ազդեցությամբ տեղի է ունենում այդ մեմբրանների կառուցվածքային վերափոխում, իսկ վերջինիս էլ զուգակցում է ֆերմենտատիվ և թափանցելիության ակտիվության բարձրացումը և ամբողջ բջջի կենսագործունեության ուժեղացումը:

Լույսի դերը նույնքան նշմարելի է ֆերմենտների կատալիտիկ ակտիվացման գործում: Ինչպես հայտնի է, ֆերմենտները սպիտակուցային կառուցվածքով միացություններ են, որոնք ակտիվացնում են օրգանիզմում իրականացվող բոլոր նյութափոխանակային պրոցեսները: Դրանք իրականում կյանքի հարուցիչներն են: Բազմաթիվ ֆերմենտների կատալիտիկ ակտիվության կանոնավորիչը բուն ինքը լույսն է, որն այդ ֆերմենտների օգնությամբ տրանսֆորմացիայի է ենթարկվում կենսաբանական համակարգերում: Այս կամ այն պատճառով օրգանիզմում ոչ ակտիվ վիճակում հանդես եկող մի շարք ֆերմենտներ լույսի ազդեցությամբ վերականգնում են իրենց կատալիտիկ ակտիվությունը, և այդ եղանակով էլ ուժեղանում է նյութերի փոխանակությունը:

Բույսերի վրա լույսի ազդեցությունը դրսևորվում է նաև այլ ճանապարհով՝ լուսահակության եղանակով, որի ժամանակ բույսի աճող օրգանները մշտապես թեքվում են դեպի լույսը: Ընդ որում, ցողունները դրսևորում են դրական լուսահակություն, իսկ արմատները՝ բացասական, այսինքն՝ վերջիններս թեքվում են դեպի լույսի հակառակ կողմը: Տերևները, ի տարբերություն ցողունի և արմատի, ցույց են տալիս այսպես կոչված դիա կամ ընդլայնական լուսահակություն՝ ճառագայթների նկատմամբ դրանք գրավում են ուղղահայաց դիրք: Բույսերի տարբեր օրգանների նման ռեակցիան լույսի հանդեպ ունի հարմարողական նշանակություն: Ցողուններն աճում են դեպի լույսը, որպեսզի մշտապես գտնվեն լույսի տակ, իսկ տերևներն էլ դասավորվում են այնպես, որ ավելի շատ ճառագայթային էներգիա կլանեն: Արմատները, որպես կանոն, լույսից խուսափում են և թափանցում հողի խոր շերտերը, որտեղ շատ ջուր և հանքային նյութեր կան:

Լուսահակության երևույթի ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ցողունի թեքումը պայմանավորված է նրանով, որ միշտ լուսավորված կողմի բջիջների աճն ավելի թույլ է, քան մյուս կողմի բջիջներինը: Նույնանման ռեակցիա է ցուցաբերում նաև ցողունի գագաթը. ուժեղ լուսավորության ժամանակ աճը դանդաղում է, մթության դեպքում՝ ուժեղանում:

Հետագա ուսումնասիրությունները հաստատեցին, որ բույսի օրգանների ռեակցիան լույսի հանդեպ կապված է հատուկ ֆիզիոլոգիական ակտիվ նյութերի առաջացման հետ, որոնք ստացել են բուսական հորմոններ անունը՝ աուքսին և հետերոաուքսին: Վերջիններս սինթեզվում են ինտենսիվ բազմացող մերիստեմային (ցողունի գագաթային) բջիջներում և շարժվում են դեպի արմատները: Երբ ցողունը գտնվում է մթության մեջ, այդ նյութերը հավասարաչափ շարժվում են ցողունի բոլոր կողմերով և այս դեպքում բացառվում է դրա ծռվելը, իսկ երբ այն տեղավորում ենք միակողմանի լույսի տակ, ապա լուսավորված մասերից աուքսինները շարժվում են դեպի հակառակ կողմը, որտեղ և ուժեղանում է բջիջների աճը, հետևաբար և ցողունը թեքվում է դեպի լույսը: Նման երևույթ դրսևորվում է նաև այն դեպքում, երբ այս կամ այն եղանակով ցողունի մի կողմում արհեստականորեն բարձրացնում ենք աուքսինների պարունակությունը:

Լույսի միակողմանի ազդեցությունն աճման վրա ակնբախ է հատկապես փաթաթվող բույսերի մոտ: Արևի տեղաշարժը հորիզոնի վրա պայմանավորում է այդ բույսերի գագաթների շրջանաձև շարժումը, որի ժամանակ դրանք հնարավորություն են ստանում փաթաթվելու ուղղահայաց դիրք ունեցող պինդ մարմիններին:

Բոլորովին այլ է միաբջիջ ջրիմուռների ռեակցիան լույսի ազդեցության հանդեպ: Մի շարք ջրիմուռներ ակտիվ շարժվում են դեպի լույսը. սակայն երբ բարձրացնում ենք վերջինիս ինտենսիվությունը, դրանք խույս են տալիս նրանից: Այս երևույթն ստացել է ֆոտոտաքսիս անունը: Հետագա ուսումնասիրություններով հաստատվել է, որ ֆոտոտաքսիսը և ֆոտոսինթեզն այդ միաբջիջ բույսերի մոտ սերտորեն կապված են. այդ արտահայտվում է նաև բարձրակարգ բույսերի քլորոֆիլ պարունակող օրգաններում:

Դեռ վաղուց նկատվել է, որ տերևի բջիջներում քլորոֆիլակիր օրգանոիդները՝ քլորոպլաստները, բջիջների մեջ ազատ շարժվում են, որի վրա ամենից ուժեղ ազդեցություն է թողնում լույսը: Երբ տերևը գտնվում է մթության մեջ, նրա բջիջներում քլորոպլաստները դասավորվում են հավասարաչափ, բայց երբ

լույսն ընկնում է տերևի վրա մի կողմից, բջիջների քլորոպլաստները տեղափոխվում են բջիջների լուսավորված մասը: Բանն այն է, որ ֆոտոսինթեզն իրականացվում է քլորոպլաստների օգնությամբ, որոնք մշտապես ձգտում են բջջի մեջ տեղավորվել այնպես, որ ավելի շատ ճառագայթներ կլանեն: Սակայն երբ լույսի ինտենսիվությունը բարձրանում է այն աստիճան, որ դրա ազդեցությունը ֆոտոսինթեզի վրա դառնում է բացասական, ապա քլորոպլաստները դասավորվում են լույսի ճառագայթներին զուգահեռ և դրանով իսկ նվազեցնում վերջիններիս կլանումը:

Լույսն ազդում է նաև բույսերի օրգանների այլ բնույթի շարժումների վրա, ինչպես՝ ծաղիկների բացման և փակման օրվա ռիթմի, կամ օրվա տարբեր ժամերին տերևների դիրքավորման վրա: Նման կարգի բոլոր շարժումները պայմանավորված են բույսերի մեջ սինթեզվող աուքսինների յուրօրինակ և դիֆերենցված ազդեցությամբ կամ էլ տվյալ օրգանների մեջ եղած ջրի լարվածության վիճակով:

Բույսերի կենսագործունեությունը, ինչպես և դրանց անհատական զարգացման պրոցեսների ընթացքը, մեծապես պայմանավորված են լուսային օրվա տևողությամբ, որը հիմնականում կապված է տվյալ միջավայրի աշխարհագրական լայնության հետ:

Դեռ վաղուց գիտնականները նկատել են, որ որոշ բույսեր ցուցաբերում են ինտենսիվ աճ, կամ արագ ծաղկում, սերմակալում են, եթե դրանք գտնվում են կարճ օրվա պայմաններում, երբ ցերեկը չի գերազանցում 12 ժամից: Բույսերի մի այլ խումբ, հակառակը, նման վարք է դրսևորում երկար օրվա պայմաններում: Այս երևույթը, որն ստացել է բույսերի ֆոտոպերիոդիզմ անունը, ավելի հանգամանորեն ուսումնասիրել են գիտնականներ Գառները և Ալլարդը 1920 թ.: Ամենից առաջ պարզվել է, որ բույսերն ըստ իրենց ցուցաբերած ֆոտոպերիոդիկ ռեակցիայի բաժանվում են 3 մեծ խմբերի՝ 1. բույսեր, որոնք ծաղկում են 12 ժամ և ավելի կարճ տևողության լուսային օրվա պայմաններում, այդ տեսակներն ընդունված է անվանել կարճ օրվա բույսեր, 2. բույսեր, որոնց ծաղկումը և սերմակալումը կապված չէ օրվա տևողության հետ. դրանք ծաղկում են ինչպես կարճ, նույնպես և երկար օրում՝ օրվա երկարության հանդեպ չեզոք բույսեր, 3. բույսեր, որոնք ծաղկում են երկար օրում՝ երկար օրվա բույսեր:

Հետագա ուսումնասիրություններով պարզվում է, որ նշված խմբերից բացի գոյություն ունեն բույսեր, որոնք ծաղկման համար սկզբում պահանջում են կարճ, ապա երկար օր, կամ հակառակը՝ կյանքի վաղ շրջանում՝ երկար, հետագայում՝ կարճ օր: Ուսումնասիրելով այդ բոլոր բույսերի աշխարհագրական տեղաբաշխումն ու ծագումը, հնարավոր է դառնում լիովին բացահայտել լուսային օրվա տևողության հանդեպ դրանց ռեակցիայի բնույթը: Ինչպես հայտնի է, օրվա տևողությունը պայմանավորված է տվյալ երկրամասի աշխարհագրական լայնությունով: Արևադարձային և մերձարևադարձային գոտում օրվա տևողությունը չի գերազանցում 12 ժամից: Հասարակածից դեպի հարավ կամ հյուսիս ընկած մարզերում օրվա տևողությունն աստիճանաբար երկարում է, որոշ շրջանում հասնելով նույնիսկ 24 ժամվա: Երկարամյա էվոլյուցիայի ընթացքում բույսերի հարմարվողականությունը միջավայրին արտահայտվել է օրվա տևողության հանդեպ դրանց ցուցաբերած վարքով: Արևադարձային ծագում ունեցող բոլոր բույսերը, հարմարվելով կարճ օրվա ազդեցությանը, սկսում են ծաղկել ու սերմակալել նշված օրվա տևողության ազդեցության պայմաններում: Հյուսիսային կամ հարավային բույսերը հարմարվել են երկար օրվա և ծաղկում են նշված ֆոտոպերիոդների ազդեցությամբ: Կան նաև բազմաթիվ բույսեր, որոնք իրենց բնական տարածման տերիտորիայով (արեալով) միջանկյալ տեղ են գրավում արևադարձային և հյուսիսային կամ հարավային աշխարհագրական լայնությունների միջև, այսինքն՝ աճում են բարեխառն գոտում:

Տիպիկ երկար և կարճ օրվա բույսերի համար ցերեկային լույսի ազդեցության տևողության պահանջը ծաղկման համար ժառանգական առումով այն աստիճանի է կայունացել, որ երբ գիշերվա ժամերին մեկ-երկու րոպե լույս ենք տալիս, կասեցվում է դրանց ծաղկումը: Ընդ որում, ուշագրավ է այն հանգամանքը, որ կարճ կամ երկար օրվա ազդեցությունը չի անհետանում, երբ փոխում ենք ֆոտոպերիոդիկ ռեժիմը: Այսպես, երբ կարճ օրվա բույսին տալիս ենք այնքան կարճ օր, որ այն չի հասցնում ծաղկել, այդ օրերի ազդեցությունը չի անհետանում և երբ որոշ ժամանակ անց այն կրկին տեղափոխում ենք կարճ օրվա պայմանների, ապա նրա ծաղկման համար պահանջվում են այնքան օպտիմալ ֆոտոպերիոդներ, որքան նա չի ստացել ըսկըզբնական շրջանում: Այս երևույթն այժմ լայնորեն օգտագործվում է պրակտիկայում՝ բույսի ծաղկումն ու սերմակալումը ցանկացած ժամանակ իրականացնելու նպատակով:

Ցերեկվա ու գիշերվա տևողությունների հարաբերությունն անմիջական ազդեցություն է գործում բույսերի ո՛չ միայն ծաղկման ու սերմակալման պրոցեսների, այլև ձմռան անբարենպաստ պայմաններին հարմարվելու վրա



կամ, այլ կերպ ասած՝ պայմանավորում է բույսի նախապատրաստումը ձմռանը:

Ամենքին հայտնի է, որ մեր շրջապատի ծառերի մեծ մասի տերևաթափն սկսվում է այն ժամանակ, երբ դեռ շարունակվում են տաք օրերը: Դիտարկումները ցույց են տալիս, որ երբ տերևաթափ ծառերն աճում են էլեկտրական լույսով վառ լուսավորվող փողոցներում, երկար ժամանակ պահպանվում են դրանց տերևները, չնայած եղանակները փոխվում են, վրա են հասնում ցրտերը: Նման դիտարկումների գիտական վերլուծությունը ցույց է տվել, որ տերևաթափի պրոցեսները, ինչպես և բույսերի ձմեռային հանգստի նախապատրաստումը նույնպես պայմանավորված են օրվա տևողությամբ: Ամառվա երկրորդ կեսից սկսած օրերի կարճացումը մի կողմից խթանում է տերևաթափը, մյուս կողմից՝ կասեցնում աճման պրոցեսները: Մինչդեռ, երբ արհեստական եղանակով ամռան երկրորդ կեսից երկարացնում ենք օրվա տևողությունը, բույսը շարունակում է իր նորմալ կենսագործունեությունն ու աճը մինչև աշնանային ցրտահարումները: Նույնիսկ երբ ծառի ճյուղերից մեկը պահվում է երկար, մյուսը կարճ օրում, դրանք դրսևորում են տարբեր վարք: Կարճ օրվա պայմաններում գտնվող ճյուղերը տերևաթափվում են, իսկ երկար օրվա ճյուղերի մոտ շարունակվում է վեգետացիան:

Ֆիզիոլոգիական ուսումնասիրությունները հաստատել են, որ երկար օրվա պայմաններում տերևներում սինթեզվում են աճմանը խթանող նյութեր, այսպես կոչված, աուքսիններ, որոնք նպաստում են տերևների երկարակեցությանը: Կարճ օրվա պայմաններում այդ նյութերի պարունակությունը տերևներում նվազում է, և սկսվում է տերևաթափը:

Ծառերի կենսագործունեության պայմանավորվածությունը օրվա տևողությամբ կարևոր հարմարվողական պրոցես է: Օրվա տևողության փոփոխությունը տարվա ընթացքում՝ որոշակի և օրինաչափ երևույթ է: Այն նախանշան է այն բանի, որ շուտով պետք է վրա հասնեն անբարենպաստ ջերմային պայմանները, որին և պետք է նախապատրաստվեն բույսերը: Միջավայրի բոլոր այլ գործոնների փոփոխությունը՝ ջերմությունը, խոնավությունը և այլն, չեն ենթարկվում ընդհանուր և հաստատուն օրինաչափության, ուստի և բույսերի նախապատրաստումը ձմռան սառնամանիքներին կապված է միայն օրվա տևողության փոփոխության հետ:

Օրվա տևողությունն ազդում է նաև բույսի կենսագործունեության այլ օղակների վրա: Ամենից առաջ այն նշմարելի ազդեցություն է թողնում բույսերի աճի վրա: Շատ բույսեր կարճ օրվա պայմաններում երբեք ցողուններ չեն կազմավորում, մնում են վարդակի վիճակում, իսկ մի այլ խմբի ներկայացուցիչներ, հակառակը, ցողուններ են կազմում: Բացի դրանից հայտնի է, որ այն ֆոտոպերիոդները, որոնք նպաստում են բույսերի ծաղկմանն ու սերմակալմանը, դանդաղեցնում են բույսերի վեգետատիվ աճը, իսկ ծաղկման համար ոչ նպաստավոր օրվա տևողությունն ապահովում է բույսերի երկարատև աճը:

Օրվա տևողությունը որոշակի նշանակություն ունի նաև պալարառաջացման գործում: Շատ բույսեր պալարներ են կազմավորում միայն երկար օրում, շատերն էլ՝ միայն կարճ օրում: Պալարները, հանդիսանալով վեգետատիվ բազմացման օրգաններ, առաջանում են հիմնականում այնպիսի լուսային ռեժիմի պայմաններում, որոնք անբարենպաստ են ծաղկման համար: Սակայն սելեկցիոն ճանապարհով ստացվել են այնպիսի բույսեր, որոնց գեներատիվ (սեռական) և վեգետատիվ բազմացման օրգանները ձևավորվում են բնական ֆոտոպերիոդների պայմաններում:

Կան բազմաթիվ այլ բույսեր, որոնց վեգետատիվ բազմացման օրգաններն առաջանում են ցողունների կամ տերևների վրա: Այս առումով ուշագրավ է բրիոֆիլիում բույսը. այն կազմավորում է ծաղիկներ ու սերմեր, սակայն, որովհետև վերջիններս ծլունակ չեն, այդ բույսերը հիմնականում բազմանում են հավելյալ բողբոջներով: Դրանք առաջանում են տերևների եզրերի սղոցաձև փոսերի բջիջներից, և հենց մայրական բույսի վրա գոյանում են դուստր անհատներ՝ իրենց նորմալ տերևներով ու արմատներով: Նման դուստր բույսերը կազմավորվում են միայն երկար օրվա պայմաններում, կարճ օրում դրանք դրսևորում են վեգետատիվ աճ:

Զգալի է նաև լույսի ինտենսիվության ազդեցությունը բույսերի կազմաբանության վրա: Բուսական բարդ համակեցություններում, որտեղ տարբեր կենսաձևերի ներկայացուցիչներն զբաղեցնում են ֆիտոցենոզի տարբեր հարկերը— ծառերը՝ վերին, թփերը՝ միջին, իսկ խոտային ձևերը՝ ստորին, լույսի ինտենսիվությունը կարևոր դեր է խաղում բույսերի նման տեղաբաշխման գործում: Երկարամյա էվոլյուցիայի ընթացքում ստորին հարկերի բույսերը, գտնվելով ցածր լուսավորվածության պայմաններում, ձեռք են բերել, այսպես կոչված, ստվերադիմացկունություն, իսկ ծառերը, որոնց սաղարթները բարձրացել ու ձգվել են արևի ճառագայթների տակ, դարձել են լուսասեր կամ լուսադիմացկուն:

Լույսի ինտենսիվության հանդեպ ունեցած ռեակցիան բույսերը դրսևորում են մի շարք ֆիզիոլոգիական և կենսաքիմիական պրոցեսներով: Ամենից առաջ ակնհայտ է դառնում, որ

ստվերադիմացկուն բույսերն առաջացնում են ավելի մեծ մակերեսի տերևներ, որոնց բջիջներում շատ է քլորոֆիլի պարունակությունը, խոշոր են նրա հատիկները: Հասկանալի է, որ նման առանձնահատկությունները նպաստում են ցածր ինտենսիվության լույսի առատ կլանմանը:

Լույսի ինտենսիվությունը մեծ ազդեցություն է գործում նաև տերևի մորֆոլոգիայի ու կառուցվածքի վրա: Միևնույն ծառի սաղարթի ներսի և արտաքին մասի տերևները տարբերվում են իրենց կառուցվածքով. այդ հատկապես ակնբախ է լուսասեր և ստվերասեր բույսերի մոտ:

Նշված հատկանիշները աստիճանաբար փոխվում են նաև բույսի հասակի մեծացման համեմատ: Ծառային մատղաշ բույսերը, որպես կանոն, ավելի ստվերադիմացկուն են և այդ հատկության շնորհիվ ունեն մեծ հարմարվողականություն անտառի ստորին հարկի բուսածածկում: Հետագա տարիներին դրանց անհատական զարգացմանը զուգահեռ բարձրանում է բույսի լուսասիրությունը:

Լույսի ինտենսիվությունն ավելի որոշակի է բույսերի կողմից ջրի կլանման և գոլորշացման բարդ ֆիզիոլոգիական պրոցեսներում: Ուսումնասիրությունները հաստատել են, որ արմատային սիստեմի հզորությունը պայմանավորված է լույսի ինտենսիվությամբ: Բարձր լուսավորվածությունն ամենից առաջ նպաստում է ֆոտոսինթեզի ակտիվացմանը և օրգանական նյութի սինթեզին, տերևի ջերմության բարձրացմանը և նրա կողմից ջրի գոլորշացմանը:

Բույսի կողմից ջրի գոլորշացումը հիմնականում իրականացվում է տերևների վրա գտնվող հատուկ անցքերի՝ հերձանցքերի միջոցով, որոնցով միաժամանակ տերևի ներսն է թափանցում օդի ածխաթթու գազը ֆոտոսինթեզի համար: Որքան բարձր է լույսի ինտենսիվությունը, դրա հետ էլ կապված՝ ֆոտոսինթեզի ակտիվությունը, այնքան ավելի լայն են բացվում հերձանցքերը, և ուժեղանում է ջրի գոլորշացումը բույսի կողմից: Եթե բույսի արմատային սիստեմը հնարավորություն է ունենում անընդհատ վերականգնելու տրանսպիրացիայի եղանակով տերևներից հեռացած ջուրը, ապա հերձանցքերը շարունակում են բաց մնալ, իսկ քլորոպլաստները ֆոտոսինթեզ կատարել:

Բույսի կողմից կլանված ջրի միայն 1—2 տոկոսն է օգտագործվում կենսական պրոցեսներում, 98—99-ը հեռանում է բույսից: Այս առումով արդարացի են Կ. Ա. Տիմիրյազևի այն խոսքերը, թե «այն սահմաններում, որոնցում իրականացվում է գոլորշացումը բույսի կողմից, ավելի շուտ պետք է դիտել որպես անխուսափելի չարիք, քան անհրաժեշտ ֆիզիոլոգիական գործունեություն»: Դրա պատճառը, ինչպես վերը նշվեց, բույսերի կողմից գոլորշացման և ֆոտոսինթեզի իրականացման արտաքին պայմանների միանմանությունն է: Նման վիճակը հասցնում է այն բանին, որ բույսերի անհատական զարգացման որոշ շրջանից հետո առաջանում են բույսի համար անհրաժեշտ երկու հակադիր պրոցեսներ: Մի կողմից աստիճանաբար ավելանում է բույսի տերևների թիվը, դրա հետ միասին ապահովվում են լավ լուսավորված պայմաններ ինտենսիվ ֆոտոսինթեզի համար, մյուս կողմից ուժեղանում է ջրի գոլորշացումը որպես տերևային մասսայի մեծացման հետևանք: Որպեսզի բույսը կարողանա ապահովել այդպիսի ինտենսիվ տրանսպիրացիա, նա հզորացնում է իր արմատային սիստեմը, մանավանդ այն դեպքում, երբ տվյալ միջավայրում հողը զուրկ է բավարար խոնավությունից:

Լույսի ազդեցությունը, ինչպես տեսնում ենք, արտահայտվում է ո՛չ միայն արմատային սիստեմի հզորությամբ, այլև նրա ջրակլանողունակության ակտիվացմամբ, ինչպես և արմատներից դեպի տերևները ջրի տեղափոխման արագությամբ:

Ջրի վերընթաց շարժումն իրականացվում է բնափայտի ջրատար անոթների միջոցով, որոնք բույսերի անատոմիայում քսիլեմա անունն են ստացել: Չափազանց տարբեր կերպ է դրսևորվում քսիլեման ստվերադիմացկուն և լուսասեր բույսերի, ինչպես և լույսի ինտենսիվության առումով տարբեր տեղերում ապրող միևնույն տեսակի բույսերի մոտ: Որպես կանոն, լուսասեր, ինտենսիվ ֆոտոսինթեզ կատարող բույսերի մոտ քսիլեմայի անոթների քանակը մշտապես գերազանցում է ստվերոտ միջավայրում աճող բույսերի ցողուններինը:

Լույսի ինտենսիվությունը մեծապես ազդում է նաև արմատատերևային փոխհարաբերության վրա: Արմատային սիստեմի հզորությունը սովորաբար դիտվում է երկու տեսանկյունով. մի կողմից՝ տարբեր հաստություն ունեցող փոխադրիչ արմատային զանգվածով, մյուս կողմից՝ ծծող և նյութափոխանակություն կատարող արմատներով: Վերջիններս իրենցից ներկայացնում են երկու միլիմետր և ավելի բարակ հաստությամբ նուրբ մազմզուկներ, որոնք կատարում են բույսի կենսագործունեության համար կարևոր երկու ֆունկցիա: Ամենից առաջ դրանք հողից կլանում են ջուր ու հանքային նյութեր, այնուհետև այդ հանքային նյութերը բջիջներում ենթարկվում են քիմիական վերափոխման, սինթեզելով բույսերի աճման և կենսական այլ պրոցեսների իրականացման համար անհրաժեշտ բազմաթիվ քիմիական միացություններ— սպիտակուցներ, ֆերմենտներ, ամինոթթուներ, ֆիզիոլոգիական ակտիվ նյութեր, որոնք ապահովում են վերերկրյա օրգանների աճն ու կենսագործունեությունը: Տերևների ֆոտոսինթետիկ և կենսական այլ պրոցեսների, ինչպես և քլորոֆիլի առաջացման ակտիվությունը պայմանավորված է արմատների կողմից սինթեզվող այդ նյութերի քանակությամբ: Հասկանալի է՝ որքան մեծ լինի նշված արմատների մասսան, այնքան բարձր կլինի ամբողջական բույսի կենսագործունեությունը:

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ բույսի, առաջին հերթին՝ տերևների, ֆիզիոլոգիական ակտիվության մակարդակը պայմանավորված է նրանով, թե դրանց մեկ միավոր մակերեսին մազարմատների որքան զանգված է ընկնում: Այդ մեծությունը մենք անվանել ենք տերևների արմատապահովվածության գործակից: Որքան մեծ է այդ գործակիցը, ֆիզիոլոգիապես այնքան ավելի ակտիվ են տերևները: Այս գործակցի մեծությունը նույնպես պայմանավորված է լույսի ինտենսիվությամբ: Ավելի շատ մազարմատներ են առաջանում բարձր լուսավորվածության պայմաններում:

Բույսի մյուս բոլոր արմատները, որոնք զուրկ են ծծող և նյութափոխանակային ֆունկցիաներից, ապահովում են մազարմատների կողմից կլանված ու սինթեզված նյութերի տեղափոխումը դեպի տերևները: Դրանք միաժամանակ իրենց հյուսվածքներում կուտակում են շաքարներ և այլ օրգանական նյութեր, որոնք գարնանը նորից օգտագործվում են բույսերի աճման պրոցեսներում: Այդ արմատների ուսումնասիրությունները ցույց են տվել, որ դրանք ինտենսիվ աճում են առավելապես քիչ խոնավություն և հանքային սննդանյութեր պարունակող հողերում, մինչդեռ բերրի և բույսերի աճման համար օպտիմալ խոնավություն պարունակող հողերում ձևավորվում են հիմնականում ծծող և նյութափոխանակային արմատներ: Այս դեպքում բարձրանում է տերևների արմատապահովվածության գործակիցը, բայց մեծ չափով կրճատվում է արմատային սիստեմի ընդհանուր զանգվածը:

Ծծող և նյութափոխանակային արմատների զանգվածը արմատների ընդհանուր կշռի աննշան տոկոսն է կազմում և, չնայած դրան, ժամանակակից ագրոտեխնիկական եղանակների կիրառման նպատակը հենց այդ արմատների քանակական ավելացումն է: Այս առումով տերևների արմատապահովվածության գործակցի բարձրացմանը նպաստող լավագույն պայմանը բույսերի մշակման հիդրոպոնային եղանակն է, որը խթանում է առավելապես ծծող և նյութափոխանակային արմատների առաջացմանը: Հիդրոպոնային պայմաններում մըշակվող գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվությունը պայմանավորված է հենց այս հանգամանքով:

Հիդրոպոնիկան նպաստավոր է նաև արմատային սիստեմի աէրացիայի համար: Բույսերն ամբողջ օրվա ընթացքում 2—3 անգամ կարճ տևողությամբ ստանում են սննդատարրերի լուծույթ, մնացած ժամանակ նրանց արմատները գտնվում են խոնավ և թթվածնով հարուստ միջավայրում, որը նպաստում է նրանց ծծող և նյութափոխանակային ֆունկցիայի ինտենսիվացմանը, հետևաբար և մայրական բույսի աճին ու բերքատվության բարձրացմանը:

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԼՈՒՅՍԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐՈՎ

Իմանալով բույսերի պահանջը տարբեր ինտենսիվության լույսի, դրա որակի ու ազդեցության տևողության նկատմամբ, հնարավորություն է ընձեռվել էներգիայի համեմատաբար ավելի փոքր ծախսումով բանջարանոցային և պտղատու կուլտուրաներն աճեցնել արհեստական լուսավորվածության պայմաններում, կամ էլ բնական լուսավորվածության եղանակով երկարացնել լուսային օրվա տևողությունը և ստանալ բարձր բերք:

Ձմեռվա ամիսներին, ինչպես և հյուսիսային մարզերում, որտեղ վեգետացիոն ժամանակաշրջանի տևողությունն անբավարար է բանջարանոցային և այլ կուլտուրաների մշակության համար, բնակչությանը վիտամիններով հարուստ կանաչեղենով ու բանջարանոցային և պտղատու կուլտուրաներով ապահովելու նըպատակով լայն մասշտաբներով այժմ զարգացվում է փակ գրունտային բուսաբուծությունը: Այս բնագավառում արհեստական լուսավորությունն օգտագործվում է տարբեր նպատակներով. ա) բույսերի աճման ու զարգացման համար անբավարար բնական լուսավորվածության ուժեղացման, ինչպես և լուսային օրվա տևողությունը երկարացնելու համար, բ) թույլ լուսավորության ջերմոցներում լուսային օրվա տևողությունը երկարացնելու համար: Այս դեպքում տրվում է մի քանի ժամ լրացուցիչ էլեկտրական լույս երեկոյան կամ գիշերվա ժամերին, որը նույնպես երկարացնում է լուսակայման տևողությունը. գ) մեկուսացված տաք շենքերում արհեստական լուսավորության օգտագործումը սոխուկավոր ծաղկաբույսերի վաղ ծաղկեցման կամ սածիլների մշակման համար. դ) սելեկցիայի և հիբրիդացիայի նպատակով, երբ ծնողական ձևերը ծաղկում են տարբեր ժամանակ և դժվարանում է դրանց տրամախաչումը: Արհեստական լրացուցիչ լույսով արագացվում է ծնողական ձևերի միաժամանակյա ծաղկումը:

Մեր երկրում բույսերի մշակումը արհեստա-

կան լույսով (առավելապես լյումինեսցենտային լամպերի օգնությամբ) սկսվել է 1946 թվականից: Սկզբնական շրջանում աշխատանքները կրել են գիտահետազոտական բնույթ, նպատակ ունենալով պարզել գյուղատնտեսական տարբեր կուլտուրաների պահանջը լույսի ինտենսիվության նկատմամբ, դրա որակը, ազդման ժամանակաշրջանը օրվա ընթացքում և այլն: Առաջին փորձերն արդեն հաստատում են, որ 8—10 հազար լյուքս լուսավորվածության դեպքում գյուղատնտեսական կուլտուրաները ցույց են տալիս ինտենսիվ աճ, առաջացնելով սովորական տեսքով նորմալ մեծության և քլորոֆիլի պարունակությամբ տերևներով բույսեր, միաժամանակ տալով առատ բերք: Նշված լուսային ռեժիմի դեպքում արագանում է նույնիսկ ծաղկումը և սերմակալումը: Արհեստական լույսի միջավայրում բույսերի ինտենսիվ աճն իրականացվում է առավելապես դեղնակարմիր ճառագայթների ազդեցությամբ և ստացվում է առատ բերք: Ընդ որում, բույսերի արդյունավետության բարձրացումն առավելապես դրսևորվում է 17—18 ժամվա լուսակայման դեպքում, անկախ դրանց ֆոտոպերիոդիկ պատկանելիությունից: Սակայն կարճ օրվա բույսերի մոտ ծաղիկների կազմավորումը տեղի է ունենում 12—14 օրում:

Բույսերի լուսամշակությունն այժմ ժողովրդական տնտեսության կարևոր բնագավառներից է, որը միավորում է կենսաբանության, ֆիզիոլոգիայի ու ագրոքիմիայի հարցերը, որոնց լուծումը կապված է այդ բնագավառների գիտնականների համատեղ ջանքերի հետ:

Սովետական Միության հյուսիսային մարզերի տնտեսության վերելքի և բնակչության պրոգրեսիվ աճի թելադրանքով անհրաժեշտ է կազմակերպել վիտամիններով հարուստ թարմ բանջարեղենի, պտուղների և մարդու կենցաղը զարդարող ծաղիկների ծավալուն արտադրությունը: Նոր ստեղծվող արդյունաբերական կենտրոնների մատակարարումը թարմ բանջարեղենով (հարավային շրջաններից) նույնիսկ ամառվա ամիսներին, դժվարագույն խնդիր է, մի կողմից՝ տրանսպորտային մեծ ծախսերի, մյուս կողմից՝ այդ կարգի գյուղատնտեսական մթերքների ոչ երկարադիմացկունության պատճառով: Նման պայմաններում տնտեսապես ավելի շահավետ է տեղում լայն մասշտաբներով կազմակերպել լուսամշակություն: Սիբիրի ջրառատ գետերի վրա կառուցվող հզոր էլեկտրակայանները լայն հեռանկարներ են բացում այդ մարզերում նոր կառուցվող արդյունաբերական կենտրոններում բանջարանոցային կուլտուրաների լուսամշակության զարգացման համար:

Հարավային քաղաքների բնակչությունը ևս բանջարանոցային թարմ մթերքների մեծ պահանջ ունի ձմեռվա ամիսներին: Այդ պահանջմունքների բավարարումը նույնպես կապված է բույսերի լուսամշակությամբ զբաղվող տնտեսությունների կազմակերպման հետ: Այժմ ջերմոցային պայմաններում արհեստական լույսի օգտագործմամբ բանջարանոցային և պտղատու կուլտուրաների մշակությունը դարձել է գյուղատնտեսության կարևոր ու եկամտաբեր բնագավառներից մեկը: Դրա հետագա զարգացումը նշանակալից թափ կստանա տասնմեկերորդ հնգամյակում:

---



# «ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՐՊՈՒՍԻՑ» ՄԻՆՉԵՎ «ԱՐԱԳ ԾԱՎԱԼՄԱՆ ԿՈՐՊՈՒՍ»

Է. Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

«ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՐՊՈՒՍԸ» ստեղծել է պրեզիդենտ Ջ. Քենեդիի ադմինիստրացիան 1961 թվականին՝ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի թույլ զարգացած երկրներ ԱՄՆ-ի գաղափարախոսական, քաղաքական ու տնտեսական ներթափանցման համար: Արևմտյան կիսագունդը կարծեցյալ կոմունիստական վտանգից «պաշտպանելու», իսկ իրականում՝ իրենց ազդեցությունը և ռստիկանական հսկողությունը ուժեղացնելու նկատառումներով, այդ պլաններում առանձնահատուկ տեղ է հատկացվում լատինաամերիկյան պետություններին:

Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի թափից, հակաամերիկյան տրամադրությունների աճից և հատկապես սոցիալիստական Կուբայի հաջողություններից վախեցած, ԱՄՆ-ի կառավարությունը, ստեղծելով «խաղաղության կորպուսը», ինչպես նաև միջամերիկյան «դաշինք պրոգրեսի համար»-ը հանուն առաջադիմության» ծրագիրը, վճռել է մի կողմից արդիականացնել նեոգաղութատիրության և մայրցամաքի վերահաս հեղափոխությունների դեմ մղած պայքարի մեթոդներն ու միջոցները, մյուս կողմից՝ հռչակել է «նոր երկխոսության» քաղաքականություն ու Լատինական Ամերիկային «հասկանալու» լոզունգը:

«Խաղաղության կորպուսի» կանոնադրությունը պաճուճված է այնպիսի ազնիվ խնդիրներով ու բարի մտադրություններով, ինչպիսիք են, օրինակ, «...ծայրաստիճան հետամնաց շրջանների երկրների զարգացմանն աջակցելը, նրանց կենսամակարդակի բարձրացմանը նպաստելը, ընդհանուր խաղաղությանը, բարեկամությանը, ԱՄՆ-ի հետ համագործակցությանն ու լավագույն փոխըմբռնմանը նպաստելը»:

Սակայն լատինաամերիկյան հանրապետություններում «խաղաղության կորպուսի» շուրջ 20-ամյա գործունեության մանրակրկիտ վերլուծությունը բացահայտում է այդ կազմակերպության իսկական նպատակները— աջակցություն ԱՄՆ-ի նեոգաղութատիրական քաղաքականությանը, տնտեսական լրտեսություն, գաղտնի ինֆորմացիայի հավաքում և հանձնարարականների մշակում՝ հնարավոր սոցիալական տեղաշարժերը և պայթյունավտանգ իրավիճակները կանխելու համար: ԿՀՎ-ի և Պենտագոնի պատվերով «կորպուսը» կատարում է սոցիոլոգիական ու հոգեբանական հետազոտություններ, ներթափանցում ազգայինազատագրական շարժման, առաջադիմական դեմոկրատական, արհմիութենական, ուսանողական և այլ կազմակերպությունների շարքերը: Այն բացահայտում է հեղափոխականորեն ու հայրենասիրաբար տրամադրված ուժերը, դրանց ղեկավարների ու անդամների մասին տվյալներ հավաքում, ծավալում է հակակոմունիստական պայքար, փառաբանում հյուսիս-ամերիկյան ապրելակերպը, իդեալականացնում զարգացման կապիտալիստական ուղին, ջանում այս կամ այն երկրի բնակչությանը համոզել այն բանում, որ ԱՄՆ-ի քաղաքականությունը համապատասխանում է տվյալ երկրի արմատական շահերին: Այդ նպատակներին հասնելու համար «կորպուսն» ամենից հաճախ թուլացնում է տեղի բնակչության հայկերպ հայրենասիրական զգացմունքները, ապակողմնորոշում և հօգուտ ԱՄՆ-ի մշակում լատինաամերիկյան հասարակական կարծիքը, հեռանկարային մասնագետներից և պրոամերիկյան տրամադրություններ ունեցող ուսանողներից գործակալներ հավաքագրում, խեղաթյուրում լատինաամերիկյան պատմությունը, խաթարում Լատինական Ամերիկայի երկրների հոգևոր կյանքը:

«Կորպուսականների» խնդիրների և գործունեության այս ամենևին ոչ լրիվ թվարկումը շարունակ համալրվում է լատինաամերիկյան սուվերեն պետությունների ներքին գործերին «խաղաղության կորպուսի» անդամների կոպիտ միջամտության նոր փաստերով, որոնք հայտնի են դառնում հասարակայնության լայն շրջաններին: Բացի այդ, «խաղաղության կորպուսի» քայքայիչ էության բուն փաստը չեն ժխտում ո՛չ միայն ԱՄՆ-ի մամուլը, այլև իրենք՝ այդ կազմակերպության ղեկավարները: «Խաղաղության կորպուսի» առաջին դիրեկտոր, պրեզիդենտ Ջ. Քենեդիի աներորդի, միլիոնատեր ու դիվանագետ, երկրորդ համաշխարհային պատերազմում ԿՀՎ-ի գործակալ

ու մինչ այժմ էլ նրա հետ սերտ կապված Ս. Շրայվերի խոստովանությամբ, «խաղաղության կորպուսը» հեշտությամբ կարելի է դարձնել «բանակային կորպուս»:

Նրան փոխարինած Դ. Վոնը՝ Պանամայում ԱՄՆ-ի նախկին դեսպանը, իր կամավորներին խրատում էր այն ոգով, թե այն երկրներում, որոնց պարագլուխները ձգտում են ազգային ինքնուրույնության, ապա կորպուսի անդամները պետք է զգույշ, բայց հաստատակամորեն դիմադրեն այդպիսի տրամադրությունների տարածմանը:

Իրենց նպատակներն ու խնդիրները բացահայտ ազդարարում են նաև «կորպուսականների» դոկտրինայի ջատագովները: Այդ իմաստով «խաղաղության կորպուսի» համար որպես «այցետոմս» է ծառայում «Միջամերիկյան հետազոտությունների հանդեսը» (Մայամիի համալսարան), որի էջերն ամբողջապես տրամադրված են «խաղաղության կորպուսին» և կուբայական հակահեղափոխությանը: Այդ պարբերականում հրապարակվել են հոդվածներ, որոնք հանձնարարականներ են պարունակում մայրցամաքի մասշտաբով կոնֆլիկտային ու հեղափոխական իրավիճակների, բրազիլացի և պանամացի ուսանողներին վերաբերող սոցիոլոգիական ու հոգեբանական հետազոտությունների առթիվ և այլն:

«Խաղաղության կորպուսը» այդ նպատակով հաճախ օգտագործում է «գիտնականների» պատմունան հագած ԿՀՎ-ի անմիջական գործակալներին, ԱՄՆ-ի զանազան համալսարանների ապաքաղաքականորեն տրամադրված երիտասարդ գիտական աշխատողներին և հարմարվողական մտայնության տեր ուսանողներին, ինչպես նաև լատինաամերիկյան գիտատեխնիկական մտավորականության պրոամերիկյան տրամադրություններ ունեցող ներկայացուցիչներին: Ելի համալսարանը ուսումնասիրություններ է կատարել Կուբայի և Հաիթիի վերաբերյալ, Միչիգանի համալսարանը տվյալներ է հավաքում լատինաամերիկյան երկրների քաղաքական գործիչների մասին:

«Խաղաղության կորպուսում» հավաքագրվող հյուսիսամերիկյան երիտասարդությանը հատկապես ընտրում է հետաքննությունների ֆեդերալ բյուրոն (ՀՖԲ): Այդ երիտասարդները, ուսուցման հատուկ դասընթացն անցնելուց հետո, հանձնվում են ԿՀՎ-ի տնօրինությանը: Այդ անձնակազմը հոգեբանական մանրակրկիտ դաստիարակություն է ստանում ԱՄՆ-ի գաղափարախոսական, քաղաքական ու ռազմական դոկտրինաների ոգով, դասընթաց է անցնում «կոմունիստական տեսության ու տակտիկայի» մասին: ԱՄՆ-ի ավելի քան 250 ուսումնական կենտրոններում հավաքագրվածներն ուսումնասիրում են համապատասխան երկրի պատմությունը, էկոնոմիկան, մշակույթը և լեզուն, ձեռք են բերում լեզվաբանների, բժիշկների, երկրաբանների, մարդաբանների, տեղագիրների, սոցիոլոգների և այլ մասնագիտություններ, հատուկ փորձաշրջան անցնում համապատասխան համալսարաններում: Պուերտո-Ռիկոյում գտնվող հատուկ ճամբարում ապագա լեգեոներներին սովորեցնում են լրտեսության արվեստը և դիվերսիոն գործը: Զինվորական մասնագետների օգնությամբ սովորում են զենք բանեցնել, ուսումնասիրում ռադիոգործը, ծածկագրությունը, ֆիզիկապես կոփվում և ապա ուղարկվում աշխարհի տարբեր շրջաններ:

Կուբայական «Գրանմա» թերթի տվյալներով, «խաղաղության կորպուսը» 1977 թվականին կարողացել էր իր գործունեությունը ծավալել Աֆրիկայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի 62 երկրներում և իր շարքերում ուներ 40 հազար գործակալներ:

Քանի որ շատ երկրներ հրաժարվեցին «կորպուսի» ծառայություններից և դրա ջոկատներն արտաքսեցին իրենց սահմաններից, 1966 թվականին դրա կազմը նվազեց՝ հասնելով 15,5 հազարի, իսկ 1977 թվականին մնացել էր ընդամենը 6 հազար մարդ: 1977 թվականի ամռանը միանգամից հավաքագրվեցին 2700 կամավորներ և ուղարկվեցին 64 երկրներ: 1961—1979 թթ. «խաղաղության կորպուսի» համար կատարված հատկացումները կազմել են 1,5 մլրդ դոլար: 1979 ֆինանսական տարում հատկացվել է 95,1 մլն դոլար: Այդ բոլոր գումարները հատկացվում են «անվտանգության փոխադարձ ապահովման մասին» օրենքով նախատեսված ֆոնդերից:

Վաղուց արդեն գաղտնիք չէ այն փաստը, որ «խաղաղության կորպուսն» անմիջականորեն կապված է ԿՀՎ-ի հետ, թեև պաշտոնապես (մինչև 1971 թ. վերակազմվելը) այն ենթարկվում էր պետական դեպարտամենտին:

Ըստ մեքսիկական «Էլ սոլ դե Մեխիկո» թերթի հաղորդման (1977 թ. դեկտեմբերի 11), 1964 թվականից սկսած «խաղաղության կորպուսի» մասնագետները Մեքսիկայում կատարել են սոցիոլոգիական ուսումնասիրություններ և ռազմահետախուզական բնույթի գործողություններ: Մասնավորապես, հասարակայնությանը հայտնի է դարձել այսպես կոչված՝ «Միչելսոնի պլանը», որի նպատակն էր որոշել ԱՄՆ-ի և Մեքսիկայի միջև կոնֆլիկտ ծագելու դեպքում մեքսիկացիների վրա ստրատեգիական զենքի հոգեբանական ներգործության աստիճանը:

«Խաղաղության կորպուսի» լրտեսական անպատկառ գործունեությունը պատասխան խիստ ռեակցիա է առաջացնում անգամ ԱՄՆ-ին բարեկամ այնպիսի մի երկրում, ինչպիսին է



Բրազիլիան: Այդ կազմակերպության գործակալները երկրի հյուսիս-արևելյան մասում հաստատվել էին դեռևս Ժոաո Գուլարտի կառավարության դեմ պետական հեղաշրջմանը նախորդած ժամանակաշրջանում՝ նպատակ ունենալով ապակայունացնել դրությունը և շփոթություն առաջացնել բնակչության շրջանում:

Արդեն մի քանի տարի է, ինչ Բրազիլիայում (ինչպես նաև մի շարք այլ երկրներում) գոյություն ունի «Ամառային լեզվաբանական ինստիտուտ»: Բրազիլիական մամուլի հաղորդման համաձայն, մինչև 1977 թվականի դեկտեմբերի 31-ը ինստիտուտի 150 աշխատակիցներ պետք է հեռանային երկրից՝ այդ ուսումնական հաստատության ստատուսի հետ անհամատեղելի գործունեության կապակցությամբ: Այդ խումբը հնդկացիների բարբառների ուսումնասիրման հետ ընդհանուր ոչինչ չուներ, բայց իր ձեռքի տակ ուներ հողի նմուշների ուսումնասիրման ապարատներ: Բանն այն է, որ այն շրջանը, որտեղ գործում էին «կորպուսականները», հարուստ է ուրանով և արժեքավոր այլ հանքանյութերով: Նորահայտ «լեզվաբանները» թափանցել էին հեռավոր շրջանները և կատարում էին երկրաբանական հետախուզություն, կառուցում օդանավակայաններ, երկրից դուրս տանում հողի նմուշներ:

Հարցի էությունն այն չէ, որ բրազիլիական վարչակարգը դեմ է ԱՄՆ-ի մոնոպոլիաների կողմից երկրի ազգային հարստությունների շահագործմանը, այլ այն, որ նա գերադասում է վերազգային կորպորացիաների հետ առևտուր անել առանց արտաքին միջամտության: 1976 թվականի վերջին, պերուական «Էքսպրեսո» թերթի հաղորդման համաձայն, նույն այդ Պերուից արտաքսվել էին վերոհիշյալ ինստիտուտի բոլոր աշխատակիցները:

Բոլորովին վերջերս, 1981 թվականի հուլիսին, Պանամայի կառավարության որոշման համաձայն, երկրից վտարվեցին ամերիկյան «Ամառային լեզվաբանական ինստիտուտի» մի խումբ աշխատակիցներ: Պարզվել է, որ ինստիտուտի «գիտնականների» գործունեությունը ղեկավարում էր կենտրոնական հետախուզական վարչությունը: ԱՄՆ-ի «միսիոներները» իրենց կենտրոններն ունեին մայրաքաղաքում և մի շարք նահանգների դժվարամատչելի շրջաններում: Պանամական իշխանությունները խուզարկության ժամանակ այդ կենտրոններում բռնագրավել են ռադիոհեռախոսային հզոր ապարատներ: «Խաղաղ ամերիկացիները», ինչպես պարզվել է, մշտական կապ են պահպանել Բոլիվիայի, Կոլումբիայի, Բրազիլիայի, Էկվադորի, ինչպես նաև բուն Միացյալ Նահանգների իրենց «կոլեգաների» հետ:

Բոլիվիայում՝ Պուերտո-Լյերաս վայրում, բնակիչները տեսել էին, թե ինչպես ամերիկացիները սուզադիմակներով իջնում էին Լոմալինդա ծովալճակի հատակը, այնտեղից հանում հողի նմուշներ, դրանք զետեղում խողովակների մեջ ու ինքնաթիռներով միանգամայն անարգել ուղարկում երկրի սահմաններից դուրս:

Միջին դարերում, Ամերիկայի նվաճման ժամանակ, կաթոլիկ հոգևորականի խաչի ետևից գնում էր իսպանական ու պորտուգալական կոնկիստադորների սուրը: XX դարում հյուսիսամերիկյան միսիոներների ու «խաղաղության կորպուսի» հետախույզների ետևից գնում են այնպիսի հզորագույն կորպորացիաներ, ինչպիսիք են «Տեքսակո-Գալֆը» և «Շել օյլ քոմպանին»՝ նավթ հետախուզելու իրենց պլաններով, ինչպես նաև ժամանակակից գաղութարարները:

Դալկադեմ եղբայրները ջունգլիներում փորում են հետախուզական խոր հորատանցքեր, արտահանում կիսաթանկարժեք քարեր: Վաթսունական թվականներին բնակչության աշխարհագրությունը, կենցաղը և բարքերը «ուսումնասիրելու» պատրվակով «կորպուսականների» մի խումբ թափանցել է վենեսուելական Պուերտո Լա Կրուս քաղաքի շրջակայքը և կազմել այդ վայրի՝ ստրատեգիական նշանակություն ունեցող օգտակար հանածոների տեղագրական ու երկրաբանական մանրակրկիտ քարտեզները:

1968 թվականին Չիլիի պետական տեխնիկական համալսարանում մերկացվել էր «խաղաղության կորպուսի» ոստիկանական գործողություններից մեկը, որի նպատակն էր գտնել հեղափոխականորեն տրամադրված ուսանողներին ու տվյալներ հավաքել նրանց մասին: Այդ գործողությունը «Կամելոտ» պլանի համաձայն Լատինական Ամերիկայի շատ երկրներում իրականացվող սոցիոլոգիական լրտեսության լայն ծրագրի մի մասն է: «Կամելոտ» պլանը Չիլիում հետևողականորեն սկսել է կիրառվել 1965 թվականից: Օգտագործելով հարցման հանգամանորեն մշակված մոդելները և լրտեսության ժամանակակից ողջ զինանոցը, այդ պլանի կազմակերպիչները խնդիր են դրել մանրամասն ուսումնասիրել քաղաքական ուժերի տեղաբաշխումը, Չիլիի հասարակության բոլոր խավերի, այդ թվում զինված ուժերի տրամադրությունը (օրինակ, նրանց ներկայացուցիչներին տրվում էր այսպիսի մի պրովոկացիոն հարց. «Ի՞նչ դիրք կգրավեք դուք, եթե իշխանության գլուխ անցնեն կոմունիստները»), նրանց գաղափարախոսությունը, ապրելակերպն ու նյութական վիճակը, նրանց քաղաքական ու կրոնական հայացքները, հավաքագրման հնարավորությունները և այլն: Այդ և ուրիշ շատ տվյալների հիման վրա որոշվում

էր քաղաքացիական պատերազմի սանձազերծ-
ման հավանականությունը և մշակվում էին
միջամտության առավել գործուն եղանակները,
ներառյալ անմիջական զինված ագրեսիան:
Կատարելով ԿՀՎ-ի առաջավոր ջոկատների
դերը, Չիլիի գյուղական վայրերում գործող
«խաղաղության կորպուսի» լեգիոներները 1967
թվականին սկսեցին կատարել մի գաղտնի
ցուցում, որը նրանցից պահանջում էր ուսում-
նասիրել «կոմունիստների ներթափանցման
աստիճանը», բնակչության տնտեսական պա-
հանջմունքները, կոմկուսակցության տեղական
բաժանմունքների կազմակերպություններն ու
դրանց օգնությունը բնակչությանը, կուսակ-
ցության ներգործությունը «խաղաղության կոր-
պուսի» վրա: Տարակույս չկա, որ ԿՀՎ-ն Չի-
լիի ժողովրդական միասնության կառավարու-
թյան տապալմանն ուղղված իր պլանները
մշակելիս հաշվի է առել «խաղաղության կոր-
պուսի» համապատասխան մասնագետների՝
Չիլիի իրականության վերաբերյալ ուսումնա-
սիրությունները:
«Խաղաղության կորպուսի» ներկայացուցիչ-
ների ուշադրության առարկա դարձեցին նաև
այնպիսի մի երկիր, ինչպիսին է Կոլումբիան,
որի համար նախապատրաստել էին «Կամե-
լոտ»-ի կոլումբիական տարբերակը՝ «Պլան
սիմպատիկո» բարեհնչուն անունով: «Խաղա-
ղության կորպուսի» «սոցիոլոգները» և ԿՀՎ-ի
գործակալները, որոնք աշխատում են ամե-
րիկյան համալսարանի «ծածկոցի» ներքո, կա-
տարել են հասարակական կարծիքի լայն
հարցում՝ սկսած «Ձեր կինը հավատարի՞մ է
ձեզ, արդյոք» հարցից մինչև «Գիտե՞ք ար-
դյոք, թե ինչ է Կուբան և ինչպե՞ս եք դուք վե-
րաբերվում նրան» հարցը: Սոցիոլոգիական
այդ տեստերի շնորհիվ պարզվել է, որ երկրի
բնակչությունը ատելություն է տածում զինված
ուժերի հանդեպ: «Էնկուեստա—503», «Ջոբ—
430», «Կոլոն» և «Նումիզմատիկո» անունները
կրող հետազոտական ծրագրերը իրականաց-
վել են համապատասխանաբար Ուրուգվայում,
Արգենտինայում, Պերուում և Բոլիվիայում:
«Խաղաղության կորպուսը» քայքայիչ գոր-
ծողություններ է իրականացնում այն երկրների
գյուղական վայրերում, ուր կատարվում է ար-
մատական ագրարային ռեֆորմ (Մեքսիկա,
Պերու) կամ տեղի են ունենում լուրջ տեղա-
շարժեր այդ բնագավառում (Պանամա, Էկվա-
դոր): Այսպես, 1974 թվականին Պերուի հա-
սարակայնությունը խորապես վրդովված էր
«կորպուսականների» քայքայիչ գործունեությու-
նից, որոնք փորձում էին գյուղացիական ե-
լույթներ հրահրել ընդդեմ երկրի առաջադիմա-
կան վերափոխումների: Պերուի կառավարու-
թյունը երկրից դուրս վռնդեց այդ պրովոկա-
տորների բազմաքանակ խումբը:

Սովորող երիտասարդության աշխարհայաց-
քի ձևավորման վրա համապատասխան ներ-
գործության նպատակին ծառայեցնելով այս
հրահանգը, «խաղաղության կորպուսի» կամա-
վորները «փորձագետների» անվան տակ թա-
փանցել են կրթության սիստեմի գրեթե բոլոր
օղակները, սկսած դպրոցներից և վերջացրած
դասագրքերի կազմումով, ինտենսիվ գործու-
նեություն են ծավալում ազգային և համալսա-
րանական գրադարաններում, մատենագիտա-
կան հիմնարկություններում, գրադարաններ են
ստեղծում քաղաքներում և գյուղական վայրե-
րում, լատինաամերիկյան հանրապետություն-
ների բնակչության շրջանում տարածում են
հատուկ ընտրված ձրի գրականություն, կո-
միքսներ, ինչպես նաև իսպաներեն լեզվով ըն-
պատակային պրոպագանդայի այնպիսի հրա-
տարակություններ, ինչպիսիք են «Լայֆը»,
«Վիսիոնը», «Ռիդերս Դայջեստը», «Լուկը» և
այլն:
Այս առումով «խաղաղության կորպուսի»,
գաղափարախոսական դիվերսիաների պրակ-
տիկան, կարծես, զուգակցվում է Ռոկֆելլերի,
Ֆորդի, Մելոնի, Կարնեգիի, Կալոնգի և այլոց
ֆոնդերի տնտեսական լրտեսության հետ, ո-
րոնք Կոլումբիայում և Բրազիլիայում, ինչպես
նաև ռեգիոնի մյուս երկրներում իրենց վարկա-
վորած գրադարանների միջոցով կատարում են
գյուղատնտեսական և սոցիալ-տնտեսական
հետազոտություններ, որոնք ուղղված են հյու-
սիսամերիկյան մոնոպոլիաների հետագա ներ-
թափանցմանը այդ երկրների էկոնոմիկայի մեջ:
Վերջին 10—15 տարում Լատինական Ամե-
րիկայում «խաղաղության կորպուսի» լրտեսա-
կան ու քայքայիչ գործունեության մի ամբողջ
շարք մերկացումների հետևանքով «կորպու-
սականների» բազմաթիվ խմբեր արտաքսվե-
ցին Բրազիլիայից, Արգենտինայից, Մեքսիկա-
յից, Չիլիից, Վենեսուելայից, Բոլիվիայից, Կո-
լումբիայից, Էկվադորից, Պերուից և այլ երկր-
ներից:
Այս ամենը 70-ական թվականների սկզբին
հանգեցրեց «խաղաղության կորպուսի» լայն
վերակառուցմանը, որի հետևանքով «կորպու-
սը» ընդգրկվեց «Գործողություն» միասնական
գործակալության՝ մի կենտրոնացված ֆեդե-
րալ գերատեսչության մեջ, որը 1971 թվակա-
նին միավորում էր ութ «կամավոր» կազմա-
կերպություններ, ներառյալ և «խաղաղության
կորպուսը»:
1977 թվականին կոնգրեսը «գործողության»
նոր դիրեկտոր հաստատեց «խաղաղության
կորպուսի նախկին աշխատակից Սեմ Բրաու-
նին:
Վերջին ժամանակներս ամերիկյան մամու-
լում առավել հաճախ են երևում այնպիսի հոդ-
վածներ, որոնք շեշտում են «խաղաղության



կորպուսի» նպատակներն ու խնդիրները վե-
րականգնելու, կազմակերպությունը արդիակա-
նացնելու անհրաժեշտությունը: 1978 թվակա-
նին սենատի՝ արտասահմանյան օգնության
ենթահանձնաժողովում լսվեց մի զեկուցում
«խաղաղության կորպուսի» ապագայի մա-
սին, որ նախապատրաստել էր միջազգային
գործերում հումանիտար պրոբլեմներն ուսում-
նասիրող Ասպենի գիտահետազոտական ինս-
տիտուտը:
Նոր ծրագրում «խաղաղության կորպուսի»
լրտեսական-դիվերսիոն և նեոգաղութատիրա-
կան գործունեությունը առաջվա նման քո-
ղարկվում է անպիսի մարդասիրական նպա-
տակներով, ինչպիսիք են օգնությունը զարգա-
ցող երկրներին առողջապահության, գյուղա-
տնտեսության, անտառատնկման, ոռոգման և
կրթության բնագավառներում: «Խաղաղության
կորպուսի» կամավորներին կրկին պարտավո-
րեցնում են հավաքել ու վերլուծել սոցիոլոգիա-
կան ինֆորմացիա, թեպետ Ս. Բրաունը հայ-
տարարել է, որ ««Խաղաղության կորպուսը»
պետք է անջատվի հետախուզության ամեն մի
հիմնարկությունից և նրա անձնակազմին հար-
կավոր չէ հանձնարարել հետախուզական
ֆունկցիաների կատարումը»: Դրանով իսկ նա
փաստորեն ընդունեց «կորպուսի» կապը
ԿՀՎ-ի հետ:
Անուհետև նախատեսվում է «կորպուսն»
ակտիվորեն ներգրավել ՄԱԿ-ի միջազգային
ծրագրերի մեջ, այսինքն՝ դրան միջազգային
ստատուս տալ: «Կորպուսի» ղեկավարությունը
և սենատը պայքարում են, որպեսզի այն լայ-
նորեն ընդգրկվի միջազգային կազմակերպու-
թյունների մեջ: Այսպես, 1977 թվականի սեպ-
տեմբերին ներկայացուցիչների պալատը հանձ-
նարարում էր ձգտել այն բանին, որ 1978 թվա-
կանին «կորպուսը» մասնակցի միջազգային
ծրագրերի 50 տոկոսին: Նույն Ասպենի ինս-
տիտուտի փորձագետ Տ. Սկենլոնը այդ կա-
պակցությամբ հայտարարել է, որ «կամավոր-
ներին չեն վերաբերվի որպես լրտեսների կամ
կուլտուրայի ոլորտի իմպերիալիստների, եթե
նրանք համագործակցեն միջազգային կազմա-
կերպությունների հետ»:
Վերսկսվելու է «խաղաղության կորպուսի»
ազգային կոնսուլտատիվ խորհրդի (ԱԿԽ) գոր-
ծունեությունը ԱՄՆ-ի փոխպրեզիդենտի գլխա-
վորությամբ: «Կորպուսի» հեղինակությունը
բարձրացնելու նպատակով դրա աշխատան-
քում ներգրավվելու են հասարակական ու քա-
ղաքական աչքի ընկնող գործիչներ, այդ թվում
Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկա-
յի երկրներից:
«Կորպուսի» գործունեության վերսկսման
առումով կարևորվում են այդ կազմակերպու-
թյան նախկին կադրային աշխատողների հաշ-
վառումն ու ընդգրկումը: Ներկայումս կենտրո-
նական ապարատում և արտասահմանում
«կորպուսի» առաջատար աշխատողների գրե-
թե կեսը նախկին «կամավորներն» են:
Անհրաժեշտ է նշել, որ «կորպուսի» մի քանի
նախկին գործիչներ կարևոր պաշտոններ էին
զբաղեցնում Ջ. Քարտերի ադմինիստրացիա-
յում. օրինակ, Տիմ Կրաֆտը եղել է պրեզիդեն-
տի հատուկ օգնականը այցելությունների հար-
ցերով, Ռասել Բեյկերը՝ գլխավոր դատախա-
զի օգնականի տեղակալը, Լայոնել Կաստի-
լիոն՝ հպատակագրման ու ներգաղթի ֆեդե-
րալ ծառայության դիրեկտորը, Պոլ Ցոնչեսը և
Քրիստոֆեր Դոդը՝ կոնգրեսականներ: Մոտ 90
նախկին «կորպուսականներ» ծառայում են
կոնգրեսում և ամենաակտիվ կերպով օգնում
իրենց գերատեսչությանը: Կան ուրիշ օրինակ-
ներ ևս. Լիլիան Քարտերը՝ ԱՄՆ-ի նախկին
պրեզիդենտի մայրը, 1967—1969 թթ. աշխա-
տում էր «կորպուսի» բաժանմունքում՝ Հնդկաս-
տանում:
Լատինական Ամերիկայի բոլոր երկրների
հասարակայնության լայն խավերը վաղուց են
արդեն յուրացրել այն պարզ ճշմարտությունը,
որ մայրցամաքի դեմոկրատական կառուցված-
քային վերափոխումներին, քաղաքական, տըն-
տեսական ու սոցիալական անկախ զարգաց-
մանը խոչընդոտում է ԱՄՆ-ի իմպերիալիզմը:
Անփառունակ «խաղաղության կորպուսը»,
որպես ԱՄՆ-ի գաղափարախոսական ու քա-
ղաքական էքսպանսիայի գործիք, տխրահըռ-
չակ «ծովային հետևակի կորպուսը», Կարիբ-
յան ավազանում ստեղծվող և սոցիալիստական
Կուբայի դեմ ուղղված «խաղաղեցնող ուժերի
կորպուսը» և, վերջապես, Մերձավոր Արևել-
քում ծավալված դեպքերի առնչությամբ Պեն-
տագոնի ստեղծած «արագ ծավալման կոր-
պուսը», որպես ռազմական ինտերվենցիայի
գործիքներ, փոխադարձաբար միմյանց լրաց-
նում են և այլ բան չեն, քան հյուսիս-ամերիկ-
յան իմպերիալիզմի «հրշեջ խմբերը», որոնք
աշխարհի տարբեր շրջաններում օգտագործ-
վում են որպես ազգային-ազատագրական
շարժումները ճնշելու, սուվերեն պետություն-
ների ներքին գործերին միջամտելու, դիկտա-
տորական վարչակարգերը վերականգնելու և
«անցանկալի» բախումները կանխելու միջոց:
Ռեյգանի իշխանության գլուխ անցնելուց հե-
տո ավելի հանդուգն ու բացահայտ դարձավ
ԱՄՆ-ի ռազմաքաղաքական կոմպլեքսի, Պեն-
տագոնի գեներալների ագրեսիվ, հեգեմոնիս-
տական քաղաքականությունը: Հակասովետա-
կան, հակակոմունիստական մոլուցքով տար-
ված, նրանք մոռանում են թե՛ սեփական, թե՛
աշխարհի ժողովուրդների անվտանգության
խնդիրները:

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՎԱՌԵԼԱՆՅՈՒԹ՝ ՋՐԻՑ

Երևանի պետական համալսարանի մասնագետները ստեղծել են ֆոտոլիզի՝ ջուրը արևի էներգիայի օգնությամբ ջրածնի և թթվածնի տարրալուծելու սարք:

Արտաքնապես այդ «արևային ռեակտորը» հիշեցնում է թևերը ծալած թիթեռ: Ներսում՝ ջրով լի ապակե գլանն է: Բավական է այդ սարքը տանել բակի արևոտ կողմը կամ դրան ուղղել լույսի ճառագայթները՝ ներսում եղած ջուրը, ասես, սկսում է եռալ: Սկսում է ֆոտոլիզի պրոցեսը. մի խողովակաճյուղից զատվում է ջրածինը, մյուսից՝ թթվածինը:

Սարքն իր կոնստրուկցիայով բարդ չէ: Գաղտնիքը կատալիզատորն է, որը խթանում է ֆոտոլիզի պրոցեսը: Հենց դա էլ ունակ է խախտելու ջրի մոլեկուլային կապերը՝ լույսի օգնությամբ տարրալուծելով այն թթվածնի ու ջրածնի:

Գիտնականները ստեղծել են էժան, պարզ տեխնոլոգիայով պատրաստվող արդյունավետ կիսահաղորդիչ կատալիզատորների սերիա: Դրանց հիման վրա էլ ստեղծվել է ջուրը ֆոտոլիզի ենթարկող սարքը:

Ժամանակակից էկոնոմիկան օգտագործում է վիթխարի մասշտաբների ջերմաէներգետիկ չվերականգնվող ռեսուրսներ՝ ածուխ, նավթ և այլն: Ջրի ֆոտոլիզը թանկարժեք բնական հումքի տնտեսման լայն հեռանկարներ է բացում:

## ՍԱՌՆԱՐԱՆ՝ ԼՎԱՑԱՐԱՆՈՎ

Հայտնի է, որ աշխատանքի ժամանակ սառնարանի հետևի պատը տաքանում է: Դա սառնարանի խցիկից «դուրս մղվող» ջերմությունն է, որին ավելանում է նաև շարժիչի ու կոմպրեսորի տաքությունը:

Արևմտագերմանական «ԱԷԳ-տելեֆունկեն» ֆիրմայի կոնստրուկտորները գտել են այդ ջերմությունն օգտագործելու միջոց: Նրանց ստեղծած նոր «Արկտիս» սառնարանի հետևի պատին տեղադրված է ջերմափոխանակիչ և բաք. մեկ օրվա ընթացքում 75 լիտր ջուրը տաքանում է 45—55 աստիճան: Նման ջերմաստիճանի ջուրը միանգամայն պիտանի է, օրինակ, սինթետիկ գործվածքներ լվանալու, իսկ սառը ջրի խառնուրդով՝ նաև լվացվելու և ցնցուղ ընդունելու համար:

Սառնարանը 50—60 տոկոսով բավարարում է չորս հոգուց բաղկացած ընտանիքի տաք ջրի օրական պահանջը, ընդ որում, սառնարանի կոմպրեսորը միացվում է հազվադեպ, քանի որ տաքացող ջուրը օգնում է ջերմությունը խցիկից հեռացնելուն: Այսպիսով, տնտեսվում է և՛ տաք ջուրը, և՛ էլեկտրաէներգիան:

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՄԱՆՐԱԽԻՃ՝ ԱՂԲԻՑ

Տոկիոյում ստեղծվել է քաղաքային և արդյունաբերական թափոնների մշակման հատուկ գիտական կենտրոն, որտեղ տեղադրվել է աղբի կրկնահալման վառարան: Տեսակավորումից հետո մնացած աղբը (պոլիմերային նրբաթիթեղներ, ջարդված ապակիներ, պահածոների տուփեր) վերստին հալվում է: Այդ խառնուրդը մշակվում է թթվածնի միջավայրում այրվող կոքսի ջերմությամբ: Աղբի ծավալը նվազում է 40 անգամ: Կրկնահալված նյութերը կարող են ծառայել որպես ամուր մանրախիճ՝ մայրուղիների շինարարության համար:

## ԻՆՖՐԱՁԱՅՆԱՅԻՆ ԽՈՋԱՆԱԿ

Շվեդական «Կորսնաս-Մարմա» ֆիրմայի ինժեներներն ապացուցել են, որ ծխնելույզներն ու արդյունաբերական կաթսաները ինֆրաձայնի օգնությամբ կարելի է մաքրել այրուքից և մրից: Այդ դեպքում ծախսվում է երկու անգամ պակաս էներգիա, քան մեխանիկական եղանակի դեպքում: Նոր մեթոդի էությունն այն է, որ խողովակի մեջ իջեցվում են ինֆրաձայնային գեներատոր և կաշեփող, որով ներմղվում է խտացրած օդը: Միացյալ նման գործողությունն ապահովում է գազատարների 100 տոկոսանոց մաքրությունը: